ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻ ԱՃՅՈՒՆՆ ԱՄՓՈՓՈՂ ՍԱՐԿՈՖԱԳԻ ՏԵՂԻ ՄԱՍԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԵՎ ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԸ ՈՐՈՇՈՒՄ ԵՆ՝

Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԱՃՅՈՒՆՆ ԱՄՓՈՓՈՂ ՍԱՐԿՈՖԱԳԸ ԴՆԵԼ ԿԱՐՄԻՐ ՀՐԱՊԱՐԱԿԻ ԴԱՄԲԱՐԱՆՈՒՄ, Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՍԱՐԿՈՖԱԳԻ ԿՈՂՔԻՆ։

ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ
ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ

---

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՄԵԾ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԱՎԵՐԺ ՓԱՌՔԻ ՀՈՒՇԱՐՁԱՆ՝ ՊԱՆԹԵՈՆ ԿԱՌՈՒՑԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԵՎ ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԸ ՈՐՈՇՈՒՄ ԵՆ՝

ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐ ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ԵՎ ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻ, ԻՆՉՊԵՍ ՆԱԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՈՒ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ՝ ԿԱՐՄԻՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ԿՐԵՄԼԻ ՊԱՐՍՊԻ ՄՈՏ ԹԱՂՎԱԾ ԱԿԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԸ ՀԱՎԵՐԺԱՑՆԵԼՈՒ ՆՊԱՏԱԿՈՎ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ ԿԱՌՈՒՑԵԼ ՄՈՆՈՒՄԵՆՏԱԼ ՇԵՆՔ՝ ՊԱՆԹԵՈՆ — ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՄԵԾ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԱՎԵՐԺ ՓԱՌՔԻ ՀՈՒՇԱՐՁԱՆ։

ՊԱՆԹԵՈՆԻ ԿԱՌՈՒՑՈՒՄՆ ԱՎԱՐՏԵԼՈՒՑ ՀԵՏՈ, ԱՅՆՏԵՂ ՓՈԽԱԴՐԵԼ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՍԱՐԿՈՖԱԳԸ ԵՎ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՍԱՐԿՈՖԱԳԸ, ԻՆՉՊԵՍ ՆԱԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՈՒ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ՝ ԿՐԵՄԼԻ ՊԱՐՍՊԻ ՄՈՏ ԹԱՂՎԱԾ ԱԿԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԻ ԱՃՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՊԱՆԹԵՈՆԻ ՄՈՒՏՔԸ ԲԱՑԵԼ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԼԱՅՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ։

ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ
ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ



Երևանի բնակչությունը Մեծ ՍՏԱԼԻՆԻ մոնումենտի մոտ:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

# ՊԱՐՏԻԱՅԻ ԲՈԼՈՐ ԱՆԴԱՄՆԵՐԻՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

ԹԱՆԿԱԳԻՆ ԸՆԿԵՐՆԵ՛Ր ԵՎ ԲԱՐԵԿԱՄՆԵ՛Ր։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը մեծ վշտի զգացմունքով պարտիային և Սովետական Միության բոլոր աշխատավորներին հայտնում են, որ մարտի 5-ին, երեկոյան ժամը 9-ից 50 րոպե անց, ծանր հիվանդությունից հետո վախճանվեց ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԸ։

Դադարեց բաբախելուց Լենինի զինակից և նրա գործի հանճարեղ շարունակող, Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի իմաստուն առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԻ սիրտը։

ՍՏԱԼԻՆԻ անունը անսահմանորեն թանկ է մեր պարտիայի համար, սովետական ժողովրդի համար, ամբողջ աշխարհի աշխատավորների համար։ Լենինի հետ միասին ընկեր ՍՏԱԼԻՆԸ ստեղծեց կոմունիստների հզոր պարտիան, դաստիարակեց և կոփեց նրան։ Լենինի հետ միասին ընկեր ՍՏԱԼԻՆԸ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ոգեշնչողն ու առաջնորդն էր, աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրը։ Շարունակելով Լենինի անմահ գործը, ընկեր ՍՏԱԼԻՆԸ սովետական ժողովրդին հասցրեց մեր երկրում սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակին։ Ընկեր ՍՏԱԼԻՆԸ մեր երկիրը հաղթանակի հասցրեց ֆաշիզմի դեմ երկրորդ համաշխարհային պատերազմում, որ արմատապես փոխեց ամբողջ միջազգային իրադրությունը։ Ընկեր ՍՏԱԼԻՆԸ պարտիային և ամբողջ ժողովրդին զինեց ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման մեծ ու հստակ ծրագրով։

Իր ամբողջ կյանքը կոմունիզմի մեծ գործին անձնվիրաբար ծառայելուն նվիրաբերած ընկեր ՍՏԱԼԻՆԻ մահը ամենածանր կորուստ է պարտիայի, Սովետական երկրի և ամբողջ աշխարհի աշխատավորների համար։

Ընկեր ՍՏԱԼԻՆԻ մահվան լուրը խոր կսկիծով կարձագանքի մեր Հայրենիքի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենտների և բոլոր աշխատավորների սրտերում, մեր քաջարի Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկների սրտերում, աշխարհի բոլոր երկրների միլիոնավոր աշխատավորների սրտերում։

Այս վշտալի օրերին մեր երկրի բոլոր ժողովուրդները է՛լ ավելի սերտորեն են համախմբվում եղբայրական մեծ ընտանիքում՝ Լենինի և Ստալինի ստեղծած ու դաստիարակած Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությամբ։

Սովետական ժողովուրդը անբաժանելի վստահություն է տածում և ջերմ սիրով է համակված իր հարազատ Կոմունիստական պարտիայի նկատմամբ, որովհետև նա գիտե, որ պարտիայի ամբողջ գործունեության բարձրագույն օրենքը ժողովրդի շահերին ծառայելն է։

Մեր երկրի բանվորները, կոլտնտեսականները, սովետական ինտելիգենտները, բոլոր աշխատավորները անշեղորեն հետևում են մեր պարտիայի մշակած քաղաքականությանը, որը համապատասխանում է աշխատավորների կենսական շահերին, ուղղված է մեր սոցիալիստական Հայրենիքի հզորության հետագա ուժեղացման նպատակին։ Կոմունիստական պարտիայի այդ քաղաքականության ճշտությունը ստուգված է պայքարի տասնամյակներով, այն Սովետական երկրի

աշխատավորներին հասցրել է սոցիալիզմի պատմական հաղթանակներին: Ոգեշնչված այդ քաղաքականությամբ, Սովետական Միության ժողովուրդները պարտիայի ղեկավարությամբ վստահորեն առաջ են ընթանում դեպի մեր երկրում կոմունիստական շինարարության նոր հաջողություններ:

Մեր երկրի աշխատավորները գիտեն, որ բնակչության բոլոր խավերի՝ բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենտների նյութական բարեկեցության հետագա բարելավումը, ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական մշտապես աճող պահանջմունքների առավելագույն բավարարումը միշտ հանդիսացել է և հանդիսանում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հատուկ հոգատարության առարկան:

Սովետական ժողովուրդը գիտե, որ Սովետական պետության պաշտպանունակությունը և հզորությունը աճում ու ամրապնդվում են, որ պարտիան ամեն կերպ ամրապնդում է Սովետական Բանակը, Ռազմա-Ծովային Նավատորմը և հետախուզության օրգանները, որպեսզի շարունակ բարձրացնի մեր պատրաստականությունը՝ ամեն ագրեսորի խորտակիչ հարված տալու համար:

Կոմունիստական պարտիայի և Սովետական Միության կառավարության արտաքին քաղաքականությունը եղել է և հանդիսանում է խաղաղության պահպանման ու ամրապնդման համար, նոր պատերազմի նախապատրաստման ու սանձազերծման դեմ մղվող պայքարի անհողդողդ քաղաքականություն, միջազգային համագործակցության և բոլոր երկրների հետ գործարար կապերի զարգացման քաղաքականություն:

Սովետական Միության ժողովուրդները, հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշին, ամրապնդում և զարգացնում են եղբայրական բարեկամությունը չին մեծ ժողովրդի հետ, ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրների աշխատավորների հետ, բարեկամական կապերը կապիտալիստական ու գաղութային երկրների աշխատավորների հետ, որոնք պայքարում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործի համար:

Թանկագին ընկերնե՛ր և բարեկամնե՛ր:

Կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում սովետական ժողովրդի ուղղությունը տվող, ղեկավար մեծ ուժը մեր Կոմունիստական պարտիան է: Պարտիայի շարքերի պողպատե միասնությունը և միաձույլ համախմբվածությունը նրա ուժի ու հզորության գլխավոր պայմանն են: Մեր խնդիրն է՝ աչքի լույսի պես պահպանել պարտիայի միասնությունը, կոմունիստներին դաստիարակել որպես պարտիայի քաղաքականության և որոշումների կենսագործման համար ակտիվ քաղաքական մարտիկներ, է՛լ ավելի ամրապնդել պարտիայի կապերը բոլոր աշխատավորների հետ, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի հետ, որովհետև ժողովրդի հետ այդ անխզելի կապի մեջ է մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը:

Պարտիան իր կարևորագույն խնդիրներից մեկը տեսնում է այն բանում, որպեսզի կոմունիստներին և բոլոր աշխատավորներին դաստիարակի քաղաքական բարձր զգոնության ոգով, ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում անհաշտության և հաստատակամության ոգով:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը, այս վշտալի օրերին դիմելով պարտիային և ժողովրդին, հաստատ վստահություն են հայտնում, որ պարտիան և մեր Հայրենիքի բոլոր աշխատավորները է՛լ ավելի սերտորեն կհամախմբվեն Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության շուրջը, կմոբիլիզացնեն իրենց բոլոր ուժերը և ստեղծագործական եռանդը մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ գործի համար:

ՍՏԱԼԻՆԻ անմահ անունը ընդմիշտ կապրի սովետական ժողովրդի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության սրտերում:

Կեցցե՛ Մարքսի — Էնգելսի — Լենինի — Ստալինի մեծ, ամենահաղթ ուսմունքը:

Կեցցե՛ մեր հզոր սոցիալիստական Հայրենիքը:

Կեցցե՛ մեր հերոսական սովետական ժողովուրդը:

Կեցցե՛ Սովետական Միության մեծ Կոմունիստական պարտիան:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ

5 մարտի, 1953 թվականի

## ՀԱՄԼԿԵՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԿՈՂՄԻՑ

# ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՆԴԱՄՆԵՐԻՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՄԲՈՂՋ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ

*Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միության Կենտրոնական Կոմիտեն մեծ կսկիծով կոմերիտմիությանը, ամբողջ սովետական երիտասարդությանը հայտնում է, որ մարտի 5-ին, երեկոյան ժամը 9-ից 50 րոպե անց, ծանր հիվանդությունից հետո վախճանվեց ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԸ։*

*Կոմունիստական պարտիային, սովետական ժողովրդին, ամբողջ աշխարհի աշխատավորներին հասավ մեծագույն վիշտ։ Մեռավ մարդկության հանճար, Լենինի մեծ զինակից ու բարեկամ, նրա անմահ գործի շարունակող, կոմունիզմի անխոնջ կառուցող, մեր առաջնորդ, հարազատ ու սիրելի հայր, սովետական երիտասարդության բարեկամ և իմաստուն ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԸ։*

*Իր ամբողջ հերոսական կյանքը ընկեր Ստալինը նվիրեց ժողովրդին, պարտիային, մեր Հայրենիքի ծաղկմանը, կոմունիզմի մեծ գործին անձնվիրաբար ծառայելուն։ Լենինի հետ միասին ընկեր Ստալինը ստեղծեց Կոմունիստական պարտիան, դաստիարակեց ու կոփեց նրան։ Լենինի հետ միասին ընկեր Ստալինը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ոգեշնչողն ու առաջնորդն էր, աշխարհում առաջին Սոցիալիստական պետության հիմնադիրը։ Շարունակելով Լենինի անմահ գործը, ընկեր Ստալինը սովետական ժողովրդին հասցրեց մեր երկրում սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակին։ Ընկեր Ստալինի իմաստուն առաջնորդությամբ սովետական ժողովուրդը երկրորդ համաշխարհային պատերազմում մեծ հաղթանակ տարավ ֆաշիզմի մութ ուժերի դեմ։ Ընկեր Ստալինը պարտիային և ամբողջ ժողովրդին զինեց կոմունիստական շինարարության մեծ ու հստակ ծրագրով, նշեց դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները տանող ուղին։ Սովետական մարդկանց յուրաքանչյուր աշխատանքային հաջողության մեջ, կոմունիստական շինարարության յուրաքանչյուր նոր հաղթանակում մարմնավորված է մեր անմահ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստությունը, անսպառ եռանդը, երկաթե կամքը։*

*Սովետական Միության պատանիների ու աղջիկների համար, ինչպես և սովետական բոլոր մարդկանց համար, ընկեր Ստալինի անունը ամենաթանկն է, ամենամոտիկը ու հարազատը։ Ընկեր Ստալինի կյանքը մեզանից յուրաքանչյուրի համար հանուն կոմունիզմի անձնվեր պայքարի մեծ օրինակ է։*

*Կոմերիտականները և կոմերիտուհիները, ամբողջ սովետական երիտասարդությունը, այս վշտալի օրերին ամբողջ սովետական ժողովրդի առջև տալիս են հանդիսավոր երդում՝ այսուհետև ևս միշտ լինել փառապանծ Կոմունիստական պարտիայի հավատարիմ ու տոկուն որդիներ ու դուստրեր, լինել սովետական Հայրենիքի բոցաշունչ հայրենասերներ, իրենց ամբողջ կյանքը նվիրել Լենինի—Ստալինի մեծ գործին, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարին։*

*Կոմերիտականները և կոմերիտուհիները, սովետական երիտասարդությունը հարազատ Կոմունիստական պարտիային, նրա Ստալինյան Կենտրոնական Կոմիտեին հավաստիացնում են, որ իրենք միշտ կլինեն զգոն, պատրաստ՝ ամեն պայմաններում, չխնայելով իրենց կյանքը, պաշտպանել սիրելի սովետական Հայրենիքը։*

*ՀամԼԿԵՄ Կենտրոնական Կոմիտեն բոլոր կոմերիտականներին, ամբողջ սովետական երիտասարդությանը կոչ է անում՝ է՛լ ավելի սերտորեն համախմբվել Կոմունիստական պարտիայի, Ստալինյան Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության շուրջը, իրենց բոլոր ուժերը, իրենց ամբողջ ստեղծագործական եռանդը նվիրել մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ գործին։*

*Սովետական պատանիները և աղջիկները իրենց սրտերում ընդմիշտ կպահպանեն սովետական մարդկանց, ամբողջ աշխարհի աշխատավորների համար անսահմանորեն թանկ մեծ ՍՏԱԼԻՆԻ անմահ անունը։*

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

# 1953 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 9-ԻՆ, ՄՈՍԿՎԱՅՈՒՄ, ԿԱՐՄԻՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻ ԹԱՂՈՒՄԸ

ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻ թաղումը կազմակերպող հանձնաժողովի նախագահ ընկեր Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎԸ խոսքը տալիս է ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի քարտուղար ընկեր ԳԵՈՐԳԻ ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆՈՎԻՉ ՄԱԼԵՆԿՈՎԻՆ:

Հաջորդը ճառ է արտասանում ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ ընկեր ԼԱՎՐԵՆՏԻ ՊԱՎԼՈՎԻՉ ԲԵՐԻԱՆ:

Այնուհետև ճառով հանդես է գալիս ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ ընկեր ՎՅԱՉԵՍԼԱՎ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ ՄՈԼՈՏՈՎԸ:

## ԸՆԿԵՐ Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎԻ ՃԱՌԸ

*Թանկագին հայրենակիցնե՛ր, ընկերնե՛ր, բարեկամնե՛ր:*

*Արտասահմանյան թանկագին եղբայրնե՛ր:*

*Մեր պարտիան, սովետական ժողովուրդը, ամբողջ մարդկությունը կրեցին ամենածանր, անվերադարձ կորուստ: Իր փառապանծ կյանքի ուղին վերջացրեց մեր ուսուցիչ և առաջնորդ, մարդկության մեծագույն հանճար Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը:*

*Այս ծանր օրերին սովետական ժողովրդի խոր վիշտը բաժանում է ամբողջ առաջավոր և պրոգրեսիվ մարդկությունը: Ստալինի անունը անսահմանորեն թանկ է սովետական մարդկանց, բոլոր աշխարհամասերի ժողովրդական ամենալայն մասսաների համար: Անսահման է ընկեր Ստալինի գործունեության մեծությունն ու նշանակությունը սովետական ժողովրդի համար և բոլոր երկրների աշխատավորների համար: Ստալինի գործերը դարեր կապրեն, և շնորհակալ սերունդները նույնպես, ինչպես որ մենք ձեզ հետ միասին, կփառաբանեն Ստալինի անունը:*

*Ընկեր Ստալինը իր կյանքը նվիրեց բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին շահագործողների լծից ու ստրկացումից ազատագրելու գործին, բնաջնջող պատերազմներից մարդկությանը փրկելու գործին, երկրի վրա աշխատավոր ժողովրդի ազատ ու երջանիկ կյանքի համար մղվող պայքարի գործին:*

*Ընկեր Ստալինը, մեր դարաշրջանի մեծ մտածողը, պատմական նոր պայմաններում ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը: Ստալինի անունը իրավամբ կանգնած է մարդկության ամբողջ պատմության մեջ մեծագույն մարդկանց՝ Մարքսի—Էնգելսի—Լենինի անունների կողքին:*

*Մեր պարտիան հետևում է մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքին, որը պարտիային ու ժողովրդին տալիս է անպարտելի ուժ, պատմության մեջ նոր ուղիներ հարթելու կարողություն:*

*Լենինը և Ստալինը երկար տարիներ ընդհատակի ծանր պայմաններում պայքար մղեցին Ռուսաստանի ժողովուրդներին ինքնակալության լծից, կալվածատերերի և կապիտալիստների ճնշումից փրկելու համար: Լենինի և Ստալինի գլխավորությամբ սովետական ժողովուրդը մեծագույն շրջադարձ իրագործեց մարդկության պատմության մեջ, վերջ տվեց մեր երկրում կապիտալիզմի կարգին և դուրս եկավ նոր ուղի՝ սոցիալիզմի ուղին:*

*Շարունակելով Լենինի գործը և անդուլ կերպով զարգացնելով լենինյան ուսմունքը, որը լուսավորում է պարտիայի և Սովետական պետության առաջընթացի ուղին, ընկեր Ստալինը մեր երկիրը հասցրեց սոցիալիզմի համաշխարհային-պատմակա՜ն հաղթանա-*

կին, որը մարդկային հասարակության գոյության շատ հազարամյակների ընթացքում առաջին անգամ ապահովեց մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացումը։

Լենինը և Ստալինը հիմնեցին բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին պետությունը, մեր Սովետական պետությունը։ Ընկեր Ստալինը անդուլ կերպով աշխատում էր Սովետական պետության ամրապնդման համար։ Մեր պետության ամրությունն ու հզորությունը մեր երկրում կոմունիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանն են հանդիսանում։

Մեր սրբազան պարտականությունն է այսուհետև ևս անդուլ կերպով ու բազմակողմանիորեն ամրապնդել մեր մեծ սոցիալիստական պետությունը՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության պատվարը։

Ընկեր Ստալինի անվան հետ է կապված հասարակության զարգացման պատմության ամենաբարդ հարցերից մեկի՝ ազգային հարցի լուծումը։ Ազգային հարցի մեծագույն թեորետիկ ընկեր Ստալինը պատմության մեջ առաջին անգամ, հսկայական բազմազգ պետության մասշտաբով, ապահովեց ազգային դարավոր երկպառակության լիկվիդացումը։ Ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր պարտիան հասավ նախկինում ճնշված ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական հետամնացության հաղթահարմանը, միասնական եղբայրական ընտանիքի մեջ համախմբեց Սովետական Միության բոլոր ազգերին և կոփեց ժողովուրդների բարեկամությունը։

Մեր սրբազան պարտականությունն է ապահովել Սովետական երկրի ժողովուրդների միասնության ու բարեկամության հետագա ամրապնդումը, Սովետական բազմազգ պետության ամրապնդումը։ Մեր երկրի ժողովուրդների բարեկամության պայմաններում մեզ համար սարսափելի չէ ո՛չ ներքին, ո՛չ էլ արտաքին որևէ թշնամի։

Ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ ստեղծվել, աճել ու ամրապնդվել է Սովետական Բանակը։ Երկրի պաշտպանունակության ամրապնդումը և Սովետական Զինված Ուժերի ամրացումը հանդիսանում էին ընկեր Ստալինի անդուլ հոգատարության առարկան։ Իր մեծ զորավար Գեներալիսիմուս Ստալինի գլխավորությամբ Սովետական Բանակը պատմական հաղթանակ տարավ երկրորդ համաշխարհային պատերազմում և Եվրոպայի ու Ասիայի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։

Մեր սրբազան պարտականությունն է ամեն կերպ ամրապնդել Սովետական հզոր Զինված Ուժերը։ Մենք պետք է դրանք պահենք մարտական պատրաստության վիճակում՝ թշնամու ամեն մի հարձակմանը խորտակիչ հակահարված տալու համար։

Ընկեր Ստալինի անդուլ ջանքերի շնորհիվ, նրա մշակած պլաններով մեր պարտիան նախկինում հետամնաց երկիրը դարձրեց ինդուստրիալ-կոլտնտեսային հզոր տերություն, ստեղծեց նոր տնտեսակարգ, որը չգիտե ճգնաժամեր և գործազրկություն։

Մեր սրբազան պարտականությունն է ապահովել սոցիալիստական Հայրենիքի հետագա ծաղկումը։ Մենք պետք է ամեն կերպ զարգացնենք սոցիալիստական արդյունաբերությունը՝ մեր երկրի հզորության և ամրության պատվարը։ Մենք պետք է ամեն կերպ ամրապնդենք կոլտնտեսային կարգը, հասնենք Սովետական երկրի բոլոր կոլտնտեսությունների հետագա վերելքին ու ծաղկմանը, ամրապնդենք բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը։

Ներքին քաղաքականության ասպարեզում մեր գլխավոր հոգատարության առարկան է անշեղորեն հասնել բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, բոլոր սովետական մարդկանց նյութական բարեկեցության հետագա բարելավմանը։ Մեր պարտիայի և կառավարության համար օրենք է հանդիսանում ժողովրդի բարօրության, նրա նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման նկատմամբ անդուլ հոգատարություն ցուցաբերելու պարտականությունը։

Լենինը և Ստալինը ստեղծեցին ու կոփեցին մեր պարտիան որպես հասարակության մեծ վերափոխող ուժ։ Ընկեր Ստալինը իր ամբողջ կյանքում սովորեցնում էր, որ չկա ավելի բարձր բան, քան Կոմունիստական պարտիայի անդամի կոչումը։ Թշնամիների

դեմ համառ պայքարում ընկեր Ստալինը պաշտպանեց մեր պարտիայի շարքերի միասնությունը, միաձուլությունն ու համախմբվածությունը։

Մեր սրբազան պարտականությունն է այսուհետև ևս ամրապնդել մեծ Կոմունիստական պարտիան։ Մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը նրա շարքերի միասնության և համախմբվածության, կամքի ու գործողության միասնության մեջ է, այն բանի մեջ, որ պարտիայի անդամները կարողանան իրենց կամքը միաձուլել պարտիայի կամքի և ցանկությունների հետ։ Մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը ժողովրդական մասսաների հետ անխզելի կապի մեջ է։ Պարտիայի և ժողովրդի միասնության հիմքը ժողովրդի շահերին պարտիայի հավատարիմ ծառայելն է։ Մենք պետք է աչքի լույսի պես պահպանենք պարտիայի միասնությունը, է՛լ ավելի ամրապնդենք պարտիայի անխզելի կապերը ժողովրդի հետ, կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին դաստիարակենք քաղաքական բարձր զգոնության ոգով, ներքին և արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում անհաշտության և հաստատակամության ոգով։

Մեծ Ստալինի առաջնորդությամբ ստեղծվեց խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերը։ Այդ լագերում եղբայրական սերտ միասնությամբ սովետական ժողովրդի հետ միասին առաջ են ընթանում չին մեծ ժողովուրդը, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի եղբայրական ժողովուրդները։ Համառ պայքարում իր հայրենիքի անկախությունը պաշտպանում է հերոսական կորեական ժողովուրդը։ Ազատության և ազգային անկախության համար արիաբար պայքարում է Վյետնամի ժողովուրդը։

Մեր սրբազան պարտականությունն է պահպանել և ամրապնդել ժողովուրդների մեծագույն նվաճումը՝ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերը, ամրապնդել դեմոկրատական լագերի երկրների ժողովուրդների բարեկամության ու համերաշխության կապերը։ Մենք պետք է ամեն կերպ ամրապնդենք Սովետական Միության հավերժ, անխախտ եղբայրական բարեկամությունը չին մեծ ժողովրդի հետ, ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրների աշխատավորների հետ։

Բոլոր երկրների ժողովուրդները ընկեր Ստալինին ճանաչում են որպես խաղաղության մեծ դրոշակակրի։ Ընկեր Ստալինը իր հանճարի մեծագույն ջանքերն ուղղում էր այն բանին, որ պաշտպաներ խաղաղության գործը բոլոր երկրների ժողովուրդների համար։ Սովետական պետության արտաքին քաղաքականությունը՝ խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականությունը, նոր պատերազմի սանձազերծման վճռական խոչընդոտն է և համապատասխանում է բոլոր ժողովուրդների կենսական շահերին։ Սովետական Միությունը անշեղորեն հանդես է եկել և հանդես է գալիս ի պաշտպանություն խաղաղության գործի, որովհետև նրա շահերը անբաժանելի են ամբողջ աշխարհի խաղաղության գործից։ Սովետական Միությունը վարել է և վարում է խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու հետևողական քաղաքականություն, նոր պատերազմի նախապատրաստման ու սանձազերծման դեմ պայքարելու քաղաքականություն, միջազգային համագործակցության և բոլոր երկրների հետ գործարար կապերի զարգացման քաղաքականություն, երկու տարբեր սիստեմների՝ կապիտալիստական ու սոցիալիստական սիստեմների տևական գոյակցության և խաղաղ մրցության հնարավորության վերաբերյալ լենինյան-ստալինյան դրույթից բխող քաղաքականություն։

Մեծ Ստալինը մեզ դաստիարակել է ժողովրդի շահերին անսահման նվիրվածությամբ ծառայելու ոգով։ Մենք ժողովրդի հավատարիմ ծառաներն ենք, իսկ ժողովուրդը ցանկանում է խաղաղություն, ատում է պատերազմը։ Թո՛ղ, ուրեմն, բոլորիս համար սրբազան լինի ժողովրդի ցանկությունը՝ թույլ չտալ, որ թափվի միլիոնավոր մարդկանց արյունը, և ապահովել երջանիկ կյանքի խաղաղ կառուցումը։

Արտաքին քաղաքականության ասպարեզում

մեր գլխավոր հոգսն է թույլ չտալ նոր պատերազմ, հաշտ ու խաղաղ ապրել բոլոր երկրների հետ։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը գտնում են, որ ամենաճիշտ, անհրաժեշտ ու արդարացի արտաքին քաղաքականությունը ժողովուրդների միջև խաղաղության քաղաքականությունն է՝ հիմնված փոխադարձ վստահության վրա, գործուն, փաստերի վրա հենվող և փաստերով հաստատվող քաղաքականությունը։ Կառավարությունները պետք է հավատարմորեն ծառայեն իրենց ժողովուրդներին, իսկ ժողովուրդները ծարավի են խաղաղության, նզովում են պատերազմը։ Հանցագործ կլինեն այն կառավարությունները, որոնք կցանկանան խաբել ժողովուրդներին, դեմ կգնան խաղաղությունը պահպանելու և նոր արյունալի սպանդ թույլ չտալու՝ ժողովուրդների սրբազան ցանկությանը։ Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության համոզմունքն է, որ ժողովուրդների միջև խաղաղության քաղաքականությունը միակ ճիշտ, բոլոր ժողովուրդների կենսական շահերին համապատասխանող քաղաքականությունն է։

Ընկերնե՛ր։ Մեր առաջնորդ և ուսուցիչ մեծ Ստալինի հեռանալը կյանքից, բոլոր սովետական մարդկանց վրա պարտականություն է դնում բազմապատկել իրենց ջանքերը սովետական ժողովրդի առջև կանգնած վիթխարի խնդիրների իրականացման գործում, մեծացնել իրենց ավանդը կոմունիստական հասարակարգի կառուցման, մեր սոցիալիստական Հայրենիքի հզորության ու պաշտպանունակության ամրապնդման ընդհանուր գործում։

Սովետական Միության աշխատավորները տեսնում են և գիտեն, որ մեր հզոր Հայրենիքը ընթանում է դեպի նոր հաջողություններ։ Մենք ունենք այն ամենը, ինչ անհրաժեշտ է լիակատար կոմունիստական հասարակարգ կառուցելու համար։

Իր անսպառ ուժերի և հնարավորությունների նկատմամբ հաստատուն հավատով տոգորված՝ սովետական ժողովուրդը կատարում է կոմունիզմի կառուցման մեծ գործը։ Աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային կանգնեցնել սովետական հասարակության հաղթական առաջընթացը դեպի կոմունիզմ։

Հրաժեշտ քեզ, մեր ուսուցիչ և առաջնորդ, մեր թանկագին բարեկամ, հարազատ ընկեր Ստալին։

Առա՛ջ, Լենինի—Ստալինի մեծ գործի լիակատար հաղթանակի ուղիով։

# ՍՏԱԼԻՆԸ ՄԵԶ ՀԵՏ Է

Բ. ՊՈԼԵՎՈՅ

(Միությունների տան Սյունազարդ դահլիճում)

Երեկոն իջավ։ Սառը մթնշաղը ծածկեց մայրաքաղաքի փողոցների և հրապարակների ընդարձակությունը։ Վառվեցին լույսերը, սակայն շարժումը քաղաքում չթուլացավ։ Մարդկային հոսանքները ձգվում են այժմ դեպի Մոսկվայի կենտրոնը։ Այդ հոսանքները ծավալվում են երկու լայն գետով և այդ գետերը հոսում են դեպի Միությունների տան դռները, ծայր աստիճանի լցնելով նրա մարմարե սանդուղքները։

Ինչքա՜ն ջերմ խոսքեր, սրտից դուրս եկած խոսքեր կարելի է լսել ընկեր Ստալինի մասին այս անծայր սգո շարքերում։

— Ա՜խ, եթե կարելի լիներ նրա տարիները երկարացնել։ Դրա համար, չմտածելով կյանքս կտայի։

— Միթե՞ միայն դուք։ Միլիոնավոր մարդիկ կտային...

Հերթով ձեռքից ձեռք են անցնում այսօրվա թերթերի սգո համարները։ Դրանք շատ չեն, և նրանց շուրջը, ովքեր ունեն թարմ համար, հերթը կարծես միանգամից ուռչում է։ Այլ տեղերում ոտքի վրա, շարունակելով դանդաղ շարժվել դեպի Միությունների տուն, կամավոր ընթերցողները բարձրաձայն կարդում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության համատեղ նիստի Որոշումը։ Որոշումը ամենաջերմ արձագանք է գտնում։



Միությունների տան Սյունազարդ դահլիճում, 1953 թ. մարտի 6: Պարտիայի և Կառավարության ղեկավարները Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ դագաղի մոտ:

*— Լենինը պարտիայի դրոշը հանձնեց Ստալինին: Ստալինը՝ իր հավատարիմ աշակերտներին:*

*— Նրա մարտական բոլոր զինակիցները, լենինյան տիպի, ստալինյան դպրոցի գործիչներ են...*

*Հրաժեշտ են տալիս սովետական մարդիկ: Ո՞վ ասես չկա նրանց մեջ, որոնք գալիս են այստեղ, վերջին պարտքը տալու ժողովրդական երջանկության ստեղծողին: Տղամարդիկ և կանայք, ծերեր և երեխաներ, զինվորներ և գեներալներ: Բոլոր հասակների, բոլոր մասնագիտությունների մարդիկ: Ահա երիտասարդ մի մայր ձեռքերի վրա տանում է փոքրիկ գանգրահեր աղջկան: Հավասարվելով դագաղին, մայրը բարձրացնում է մանկանը. կարծես ուզում է, որպեսզի նա իր ամբողջ կյանքում հիշողության մեջ դրոշմի Ստալինի կերպարը: Բոլորը դանդաղ շարժվում են դագաղի մոտով և ապա երկար, հենց դռների մոտ, ետ են նայում, չեն կարող հայացքը կտրել Ստալինի դեմքից:*

*Գալիս է պատերազմի բարձրահասակ, վտիտ, կորացած վետերանը: Նա վաղուց արդեն զորացրվել է, զբաղված է խաղաղ աշխատանքով, բայց զինվորական բեղերը և կտրիճի կեցվածքը մատնում են նախկին ռազմիկին: Չկոճկած բաճկոնի արանքից երևում է փառքի շքանշանների լրիվ ժապավենը: Անցնելով դագաղի մոտով, վետերանը ձգում է ձեռքերը անդրավարտիքի կարերի ուղղությամբ, հավասարում պահելով Գեներալիսիմուսին: Նրա դեմքը քարացել է, սակայն անկոչ արցունքի երկու խոշոր կաթիլ ցած են վազում աչքերից...*

*Դագաղը թաղված է ծաղիկների մեջ: Պսակները դրված են պատերի մոտ՝ համատարած շարքերով: Պսակների քանակը աճում է ժամ առ ժամ: Կանաչի, կենդանի ծաղիկների բուրմունքը կրեպով մթնեցրած ջահերի լույսի հետ միասին լցնում են սգո դահլիճը: Այսօր ես տեսա, թե ինչպես այս ծաղիկների հեղեղին ավելացավ մի փոքրիկ, բայց թանկագին կաթիլ: Մարդկանց հոսանքի հետ դահլիճ մտավ մի երեք տարեկան տղա, ջղաձգորեն կառչած հոր ձեռքին: Մյուս ձեռքին նա պահել էր կարմիր խորդենու միայն մի ծաղիկ, թերևս աճած նրա լուսամուտի գոգին: Հավասարվելով դագաղին, տղան հարցական նայեց հորը, ապա, դուրս գալով ընդհանուր հոսանքից մանրիկ քայլերով մոտեցավ դագաղին և իր ծաղիկը դրեց նրա պատվանդանին: Այդպես Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի, Սովետական կառավարության կողմից դրված պսակների կողքին այժմ դրված է նաև մանկական սրտի այդ փոքրիկ նվերը:*

*Դահլիճ են բերում մի հսկայական պսակ չին ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունի կողմից: Չին մեծ ժողովրդի ներկայացուցիչները դագաղի պատվանդանի մոտ պսակներ են դնում Չինաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի, Ժողովրդական Քաղաքական Կոնսուլտատիվ*

խորհրդի համաչինական կոմիտեի, Չժոու Էն-լայի, ՍՍՌՄ-ում Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի Արտակարգ և լիազոր դեսպանի, Չին-սովետական Ընկերության կողմից։ Չինաստանի աշխատավորները խոր սուգ են արտահայտում չին ժողովրդի լավագույն բարեկամ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի մահվան առթիվ։

Դահլիճ են մտնում ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեսպանությունների և միսիաների անդամները։ Պսակներ են դրվում կոմունիստական և բանվորական պարտիաների կենտրոնական կոմիտեների, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների կառավարությունների կողմից։ Պսակների վրայի մակագրությունները խոսում են անմահ Ստալինի նկատմամբ այդ երկրների ժողովուրդների սրտագին սիրո մասին։

Ամբողջ ժամանակ փոխվում է պատվո պահակը։ Պահակություն են անում Մոսկվայի պարտիական ակտիվի ներկայացուցիչները, բանվորները, կոլտնտեսականները, գիտնականները, գրողները, Մինիստրությունների ղեկավարները, ՍՍՌՄ և միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատները, Սովետական Միության Հերոսները և Սոցիալիստական Աշխատանքի Հերոսները, Սովետական Բանակի մարշալները և գեներալները, Ռազմա-Ծովային Նավատորմի ադմիրալները։ Սգո հերթափոխության են կանգնած ՍՍՌՄ Ռազմական մինիստրի առաջին տեղակալներ, Սովետական Միության մարշալներ Ա. Մ. Վասիլևսկին և Գ. Կ. Ժուկովը, Սովետական Միության եռակի հերոսներ, փառաբանված ստալինյան բազեներ Պոկրիշկինը և Կոժեդուբը, ակադեմիկոսներ Սկոբելցինը և Օպարինը, գրողներ Ֆադեևը և Սուրկովը։

Ցերեկվա ժամը չորսն է։ Ի. Վ. Ստալինի դագաղի մոտ պատվո պահակ են կանգնում. ընկերներ Գ. Մ. Մալենկովը, Լ. Պ. Բերիան, Վ. Մ. Մոլոտովը, Կ. Ե. Վորոշիլովը, Ն. Ս. Խրուշչևը, Ն. Ա. Բուլգանինը, Լ. Մ. Կագանովիչը, Ա. Ի. Միկոյանը, Մ. Զ. Սաբուրովը, Մ. Գ. Պերվուխինը, Ն. Մ. Շվերնիկը։



Հայաստանի դելեգացիան Սյունազարդ դահլիճում։

Իր ամբողջ կյանքը, մինչև սրտի վերջին զարկը, իր հանճարի ամբողջ անմարելի լույսը, իր հզոր մտքի ողջ ուժը ընկեր Ստալինը առանց մնացորդի տվեց ժողովրդին ծառայելու գործին։ Որտեղ էլ աշխատեր սովետական մարդը, սովետական երկրի որ հեռավոր ծայրամասերում էլ ապրեր, նա միշտ զգում էր ստալինյան հոգատարությունը, ստալինյան սերը, ստալինյան ուղղություն տվող ձեռքը։

Եվ ահա այժմ, դիտելով, թե ինչպես է մարդկային վշտալի հոսանքը շարժվում Սյունազարդ դահլիճով, առանձնահատուկ ուժով զգում ես, որ սովետական մարդիկ առաջնորդի մահն ընկալեցին ոչ միայն որպես համազգային, համամարդկային, այլև որպես իրենը, սեփական վիշտը, որպես ամենաթանկագին և մոտիկ մարդու կորուստը։



Մոսկվա։ Կարմիր հրապարակ։ Սովետական Միության աշխատավորների կողմից ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԻ դագաղին դրված պսակները։

Բայց այդպիսին է մեր սոցիալիստական կարգի բնույթը, այդպես է դաստիարակել Կոմունիստական պարտիան սովետական մարդկանց, որ նույնիսկ վիշտն էլ առավել ևս համախմբում է մեզ։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Կառավարության դիմումի անվեհեր խոսքերը հասան աշխատավորների սրտերին։ Ինչպես և միշտ, մեծ փորձությունների տարիներին, այս վշտալի օրերին սովետական ժողովուրդը միասնական է, միաձույլ, սերտ համախմբված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը։

Պարտիայի և ժողովրդի այդ անխզելի կապի մեջ, վշտի ժամանակ մի նոր մեծագույն ուժով երևան եկան պարտիայի հզորությունը և Լենինի—Ստալինի դրոշի անհաղթելիությունը, վեհությունն ու անսասանությունը։

Կոմունիզմի կառուցումը մեր երկրում ամբողջ կյանքի նպատակն էր մեծ ճարտարապետի, որն այժմ հեռացավ մեզնից։ Սովետական մարդիկ, որոնց նա տանում էր դեպի այդ նպատակը, որոնց նա ոգեշնչում էր խոսքով, գործով, իր ամբողջ գեղեցիկ կյանքի անգերազանց օրինակով, այժմ, պարտիայի կոչով, կրկնապատկում են իրենց ջանքերը, կատարելով ստալինյան իմաստուն նախագծումները։

Թեև մեզնից յուրաքանչյուրը սրտում հըս-

կայական վիշտ է կրում, Մոսկվայի շատ ձեռնարկությունների արտադրողականությունը մարտի առաջին օրերին բարձրացել է, ռացիոնալիզատորական առաջարկությունների հոսանքը աճում է։ Այդպիսի լուրեր հեռագիրը և ռադիոն բերում են երկրի բոլոր ծայրերից։ Կոփված և ոգեշնչված պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության կողմից, մեր ժողովուրդը, ժողովուրդ մարտիկը և ստեղծագործողն անասելի եռանդով մեծ հուշարձան է կառուցում իր առաջնորդին։ Այդ հուշարձանը՝ կոմունիզմն է։

Պատվո պահակ են կանգնում ընկերներ Մ. Ա. Սուսլովը, Ն. Ա. Միխայլովը, Պ. Կ. Պոնոմարենկոն, Ս. Դ. Իգնատևը, Ա. Բ. Արիստովը, Ն. Ն. Շատալինը, Մ. Ֆ. Շկիրյատովը, Ա. Մ. Պուզանովը, Ա. Գ. Զվերևը։

Ուշ երեկո է։ Մարդիկ դեռ գալիս են ու գալիս։ Դահլիճ են բերում նոր և նոր պսակներ՝ մեր անծայրածիր հայրենիքի ռեսպուբլիկաների, երկրամասերի, մարզերի և շրջանների բանվորների, կոլտնտեսականների կողմից։

Ամբողջ երկիրը հրաժեշտ է տալիս մեծ առաջնորդին։

...Կես գիշեր է։ Մարդկային հոսանքն անվերջանալի է այնպես, ինչպես և ցերեկը, ինչպես և երեկ։

Նորից պատվավոր պահակ են կանգնում Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի մարտական զինակիցներն ու աշակերտները, ընկերներ՝ Գ. Մ. Մալենկովը, Լ. Պ. Բերիան, Կ. Ե. Վորոշիլովը, Ն. Ս. Խրուշչևը, Ն. Ա. Բուլգանինը, Լ. Մ. Կագանովիչը, Ա. Ի. Միկոյանը, Մ. Զ. Սաբուրովը, Մ. Գ. Պերվուխինը, Ն. Մ. Շվերնիկը։

...Գիշերվա ժամը երեքն է։ Սովետական մարդիկ շարունակում են անցնել Ի. Վ. Ստալինի դագաղի առջևից։

Հրաժեշտ տալով Ստալինին, մենք հաստատ ուժով զգում ենք, որ նա հավերժորեն պետք է ապրի։

Նա պետք է ապրի իր մեծ գործերում, իր հանճարեղ աշխատություններում, որոնք լուսավորում են մեր ժողովրդի ուղին դեպի երջանիկ կոմունիստական վաղը։



Մոսկվա. 1953 թվականի մարտի 6։ Մայրաքաղաքի աշխատավորները գնում են Միությունների տան Սյունազարդ դահլիճ, որտեղ դրված է Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԻ մարմինն ամփոփող դագաղը։

Նա պետք է հավերժորեն ապրի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կազմակերպող և ուղղություն տվող կամքի մեջ։

Նա պետք է հավերժորեն ապրի սովետական ժողովրդի շնորհակալ սրտերում, որին նա անցկացրեց մեծ փորձությունների փոթորիկների միջով և հասցրեց մեծ հաղթանակների։

Լենինի—Ստալինի դրոշը վերցրին ընկեր Ստալինի հավատարիմ զինակիցների հուսալի, հզոր ձեռքերը։ Այդ դրոշը վերցրեց իր ձեռքը հերոսական պարտիան, որ աճեցրել է նա, վերցրեց ամբողջ սովետական ժողովուրդը։

Այդ դրոշի ներքո մենք վստահորեն կգնանք առաջ, դեպի Կոմունիզմ։

# ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻ ԹԱՂՈՒՄԸ

Մարտի 9-ին սովետական ժողովուրդը, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը վերջին հրաժեշտը տվին Լենինի զինակից և նրա գործի հանճարեղ շարունակող, իմաստուն առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։ Երեք օր շարունակ հոսում էր կենդանի մարդկային անհատնում գետը Միությունների տան Սյունազարդ դահլիճ, որտեղ դրված էր ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղարի դագաղը։ Ոչնչով չի կարելի չափել ժողովրդի երջանկության կերտող ընկեր Ստալինի նկատմամբ մեր հայրենիքի աշխատավորների անսահման սիրո ամբողջ խորությունը, ծանր կորստի առթիվ նրանց խոր վիշտը։ Այդ երեք օրում հարյուր հազարավոր մարդիկ անցան առաջնորդի դագաղի առջևով, երդում տալով հավատարիմ լինել Լենինի—Ստալինի սրբազան դրոշին։

Մարտի 9-ի առավոտը։ Հրաժեշտի վերջին ժամերն են... Տարածվում են սգո մեղեդիների հնչյունները։ Առաջնորդի դագաղի մոտ մնում են նրա հարազատներն ու մերձավորները, մայրաքաղաքի պարտիական և սովետական ակտիվը, մինիստրներ, արտասահմանյան եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ղեկավարներ։ Դահլիճում են գտնվում օտարերկրյա կառավարական դելեգացիաները, որոնք ժամանել են Ի. Վ. Ստալինի թաղմանը ներկա գտնվելու համար, դեսպանությունների ու միսիաների ղեկավարները, որոնց նրանց կառավարությունները լիազորել են իրենց ներկայացնել թաղման ժամանակ։ Յուրաքանչյուր երկու-երեք րոպեն մեկ փոխվում է պատվո պահակը։

Առավոտյան ժամը 10-ն է։ Դագաղի մոտ են կանգնում մեծ Ստալինի հավատարիմ աշակերտներն ու զինակիցները՝ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարները։ Առաջնորդին հրաժեշտ տալու վերջին րոպեներն են։

Ժամը 10-ից հինգ րոպե անց ընկերներ Գ. Մ. Մալենկովը, Լ. Պ. Բերիան, Վ. Մ. Մոլոտովը, Կ. Ե. Վորոշիլովը, Ն. Ս. Խրուշչևը, Ն. Ա. Բուլգանինը, Լ. Մ. Կագանովիչը, Ա. Ի. Միկոյանը խնամքով իրենց ձեռքերի վրա են բարձրացնում Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի դագաղը և դանդաղ ուղևորվում դեպի ելքը։

Միությունների տնից դուրս են բերում պսակները։ Սովետական Միության մարշալները, գեներալները ատլասե ալ-կարմիր բարձիկների վրա տանում են Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի շքանշաններն ու մեդալները։



Մոսկվա։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար, Գեներալիսիմուս Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ թաղումը։
ՆԿԱՐՈՒՄ՝ Սգո շքախումբը Կարմիր հրապարակում։

Օխոտնի Ռյադի և Մանեժնայա հրապարակի երկայնքով շարվել է զինվորական ուղեկցող ջոկատը:
Ընկեր Ի. Վ. Ստալինի դագաղը դրվում է հրետասայլի վրա: Դագաղի կափարիչի վրա դրված է Սովետական Միության Գեներալիսիմուսի գլխարկը:
Դագաղի հետևից գնում են հանգուցյալի ընտանիքի անդամները, գնում են առաջնորդի մերձավորագույն զինակիցները, պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարները, Սովետական Բանակի մարշալներ և գեներալներ, գնում են արտասահմանյան պետությունների ու կառավարությունների՝ թաղմանը ժամանած ղեկավարները, որոնք գլխավորում են կառավարական դելեգացիաներին, ինչպես նաև դիվանագիտական ներկայացուցիչների ղեկավարները, որոնց իրենց կառավարությունները լիազորել են նրանց ներկայացնելու Ի. Վ. Ստալինի թաղմանը, և արտասահմանյան երկրների ուրիշ ներկայացուցիչներ:
Սգո թափորը թաղման fայլերգի հնչյունների տակ դանդաղ շարժվում է դեպի Կարմիր հրապարակ:
Կարմիր հրապարակում հավաքվել են Մոսկվա fաղաքի աշխատավորների ներկայացուցիչները, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի դելեգացիաները: Այստեղ են չին մեծ ժողովրդի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների ներկայացուցիչները, այլ երկրների դելեգացիաներ ու ներկայացուցիչներ:
Տրիբունայի վրա է դիվանագիտական կորպուսը:
Լուռ fարացել են Մոսկվայի կայազորի շարված զորամասերը: Ժամը 10-ից անց է 45 րոպե: Սգո թափորը կանգ է առնում Դամբարանի մոտ: Խոնարհվում են մարտական դրոշները. դրանf պսակված են Սովետական Բանակի անմահ հաղթանակների փառfով, որոնf ձեռf են բերվել Հայրենական Մեծ պատերազմի տարիներին՝ բոլոր ժամանակների ու ժողովուրդների մեծագույն զորավար ընկեր Ի. Վ. Ստալինի առաջնորդությամբ:
Դագաղը իջեցվում է հրետասայլից և դրըվում է կարմիր ու սև կտավներով ծածկված բարձր պատվանդանի վրա:

Պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարները, արտասահմանյան պետությունների և կառավարությունների ղեկավարները, որոնf գլխավորում են կառավարական դելեգացիաներին, ինչպես նաև դիվանագիտական ներկայացուցչությունների ղեկավարները, որոնf իրենց կառավարությունների կողմից լիազորված են նրանց ներկայացնելու Ի. Վ. Ստալինի թաղմանը, արտասահմանյան եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարները բարձրանում են Դամբարանի տրիբունայի վրա:
Ժամը 10-ից անց 52 րոպե: Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի թաղումը կազմակերպող հանձնաժողովի նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչևը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի հանձնարարությամբ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար, Սովետական Միության Գեներալիսիմուս Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի հիշատակին նվիրված սգո միտինգը հայտարարում է բացված:
Առաջին խոսքը տրվում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի fարտուղար ընկեր Գեորգի Մաfսիմիլիանովիչ Մալենկովին:
Հետևյալ ճառն արտասանում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ ընկեր Լավրենտի Պավլովիչ Բերիան:
Ապա ճառով հանդես է գալիս ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ ընկեր Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովը:
Ժամը 11-ից անց է 54 րոպե: Ընկ. Ն. Ս. Խրուշչևը ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար, Գեներալիսիմուս Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի հիշատակին նվիրված սգո միտինգը հայտարարում է փակված:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարները, արտասահմանյան եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ղեկավարները իջնում են Դամբարանի տրիբունայից: Ընկերներ Գ. Մ. Մալենկովը, Լ. Պ. Բերիան, Վ. Մ. Մոլոտովը, Կ. Ե. Վորոշիլովը, Ն. Ս. Խրուշչևը, Ն. Ա. Բուլգանինը, Լ. Մ. Կագանովիչը, Ա. Ի. Միկոյանը բարձրացնում են դագաղը և դանդաղ տանում են Դամբարան, որի մուտքի վրա գրված են անսահմանորեն թանկ երկու անմահ անուններ.

## ԼԵՆԻՆ
## ՍՏԱԼԻՆ

Որոտում են հրետանային սալյուտի երեսուն համազարկեր... Կրեմլի Սպասսկի աշտարակի ժամացույցը խփում է տասներկու անգամ: Մոսկվայի վրա, ամբողջ սովետական երկրի վրա երեք րոպե շարունակ անընդմեջ շչում են ֆաբրիկաների, գործարանների, շոգեքարշերի, շոգենավերի շչակները... Հայրենիքը սալյուտ է տալիս ժողովուրդների մեծ հորը և ուսուցչին: Ամենուրեք՝ Բալթիկայի ափերից մինչև Կուրիլյան կղզիները, ամբողջ Սովետական երկրում, հինգ րոպե աշխատանքն ընդհատեցին բոլոր ձեռնարկությունները, կանգ առավ գնացքների երթևեկությունը, կանգ առան շոգենավերը, ավտոմոբիլները... երկիրը խորապես սգում է մեծ կորուստը: Բայց Ստալինի անունը, Ստալինի գործերը անմահ են: Ստալինը հավերժ կապրի ժողովրդի սրտում, նրա մեծագործությունների մեջ հանուն կոմունիզմի:

Սգո մեղեդին փոխարինում են Սովետական Միության Պետական Հիմնի վեհ, հանդիսավոր հնչյունները:

Պարտիայի և Կառավարության ղեկավարները նորից բարձրանում են Դամբարանի տրիբունան: Դամբարանի առջևով, հատու քայլերով անցնում են զորքերը, երկնքում կուռ շարքով թռչում են ինքնաթիռները: Վերջին զինվորական պատիվն է մատուցվում մեծ առաջնորդ և զորավար Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին:



Միությունների տան Սյունազարդ դահլիճ: Պիոներները Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ դագաղի մոտ:



# ՄԻ ՄՈՍԿՎԱՑԻ ՓՈՔՐԻԿ ԱՂՋԻԿ

*ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ*

Մոսկվան տխուր է, վշտաբեկ,
Թախիծ ու սուգ է քաղաքում,
Եվ ռադիոն ամենուրեք
Մահվան քայլերգ է նվագում:

Ու ձգվում են շարքերն անվերջ
Դեպի դահլիճը Սյունազարդ,
Ուր ննջում է ծաղկունքի մեջ
Մեր Առաջնորդը հարազատ:

Մեղեդին է հնչում տխուր,
Ու քայլում են շարքերը ձիգ,
Մեծերի հետ քայլում է լուռ
Մի մոսկվացի փոքրիկ աղջիկ:

Քայլում է լուռ ու վշտահար,
Ծաղիկների փունջը ձեռքին,
Արցունքները հոսում են վար
Եվ ընկնում են ծաղիկներին:

Քայլում է նա ու վերհիշում.
Մայիսմեկ էր. շարքերն արագ
Գալիս էին ու երգելով
Մտնում Կարմիր հրապարակ:

Հետո հիշում, հիշում է պարզ,
Այն ակընթարթը երջանիկ,
Երբ ծաղկեփունջը իր առած,
Նա մոտեցավ Դամբարանին:

Մոտեցավ լուռ ու շփոթված,
Սանդուղքներով բարձրացավ վեր
Եվ ծաղիկները իր փնջած
Առաջնորդին տվեց նվեր:

Առաջնորդը ժպտաց իրեն,
Ժպտաց քնքուշ ու գուրգուրեց,
Ապա գրկեց նա ջերմորեն,
Գրկեց ամուր ու համբուրեց:

Բայց ննջում է հիմա, նայի՛ր,
Առաջնորդը դագաղի մեջ,
Փակ են աչքերը այն բարի,
Որ ժպտացել էին իրեն:

Մեղեդին է հնչում տխուր,
Հեկեկում են շարքերը ձիգ,
Մեծերի հետ լալիս է լուռ
Մի մոսկվացի փոքրիկ աղջիկ:

Լալիս է լուռ ու վշտահար,
Ծաղիկների փունջը ձեռքին,
Արցունքները հոսում են վար
Եվ ընկնում են ծաղիկներին:

Կանգնում է նա դագաղի մոտ,
Նայո՜ւմ, նայո՜ւմ է նա երկար,
Եվ դնում փունջն իր արցունքոտ
Պսակների մոտ անհամար:

Փունջը դնում, կանգնում է լուռ
Ու սրտի մեջ ասում է.— Հա՜յր,
Մի՛շտ պատրաստ եմ պայքարելու
Քո լուսավոր գործի համար:

Մեղեդին է հնչում տխուր,
Ու երդվում են շարքերը ձիգ,
Մեծերի հետ երդվում է լուռ
Մի մոսկվացի փոքրիկ աղջիկ:

# ՍՏԱԼԻՆՆ ԱՆՄԱՀ Է

Ստալինի անվան ջոկատ...

Սև ժապավենը կրծքներին, դեմքերին անսահման կսկիծն ու ցավը, աչքերին արցունքի կաթիլները կանգնած են նրանք՝ Ստալինի անվան ջոկատի պիոներները։

Ստալինն այլևս չկա։ Ինչպե՞ս հավատալ դրան։ Ինչպե՞ս այդ մտքի հետ հաշտվի նրանց սիրտը, նրանց ուղեղը։ Չէ՞ որ նրանք խոսել են սովորել արտասանելով Ստալին անունը և իրենց ամբողջ գիտակցական կյանքում ապրել, շնչել են այդ անվան հետ, այդ անունով։

Ինչպիսի՜ հպարտությամբ են ջոկատի պիոներները կրել Ստալինի անունը, որքան բարձր են պահել նրանք ջոկատի պատիվը՝ ուսման մեջ, աշխատանքում, ամեն ինչում։ Չէ՞ որ այդ ջոկատը կրում է ամենաթանկագին անունը, Ստալինի անունը, իսկ դա մեծ երջանկություն է, մեծ պատիվ, որ տրվել է նրանց։

Անսահման ծանր է կորուստը և վիշտը անծայր։

Կանգնած են Ստալինի անվան ջոկատի աղջիկները խորունկ վիշտն իրենց սրտում, այդ մեծ ցավի ծանրությունն զգալով հոգում։ Բայց նրանց փոքրիկ ձեռքերը սեղմված են։ Թափվում են արցունքները, սակայն նրանց կամքն անհողդողդ է, չի ընկճվել նրանց ոգին։ Այդ անընկճելի ոգին նրանց մեջ դրել է Մեծ Ստալինը։ Այդ ոգին կապրի հավիտյան և բոլորի սրտում կապրի նաև Ստալինի պայծառ անունը։

Ստալինն անմահ է։

«Ստալինն անմահ է». այս էր Երևանի 28-րդ դպրոցի Ստալինի անվան ջոկատի հավաքույթի թեման, որը տեղի ունեցավ մարտի 15-ին։

Հավաքույթն սկսվեց Պիոներների պալատի Լենինի—Ստալինի սենյակում։ Այստեղ նկարների, քանդակների, մակետների և բազմաթիվ լուսանկարների միջոցով արտահայտված է մեծ առաջնորդների կյանքը։

Սենյակի ղեկավար ընկեր Բարսամյանը պատմում է Ստալինի կյանքի մասին։

Քանի՜ անգամ են երեխաները կարդացել ընկեր Ստալինի կենսագրությունը, ծանոթացել նրա կյանքի տարբեր էտապների հետ, քանի՜ անգամ են լսել այդ մասին։ Թվում է, թե ամեն ինչ գիտեն. բայց ահա պատմում է ընկեր Բարսամյանը, իսկ երեխաները հուզված ու հափշտակված լսում են իրենց արդեն ծանոթ պատմությունը, սրտատրոփ հետևում առաջնորդի կատարած յուրաքանչյուր քայլին։ Այդ պահին նրանք ո՛չ միայն լսում էին, այլև մտածում այն մասին, որ պետք է ամեն ինչով նմանվել Առաջնորդին, նրա նման սիրել մեր անծայր Հայրենիքը, նվիրվել Լենինի—Ստալինի մեծ գործին։

Ընկեր Բարսամյանը պատմում է Ստալինի կյանքի մասին, իսկ պատերին փակցված նկարներից Ստալինն է նայում։ Ահա նա Գորիում, իր պատանի ընկերների շրջանում, բաց գիրքը ձեռքին, հայացքը հառած հեռուն։ Նայում են երեխաներն այդ նկարին և զգում, որ դեռևս պատանի Ստալինի հայացքում ամփոփված էր մեր այսօրվա կյանքը, դեռ այն ժամանակ Ստալինը տեսնում էր մեր ապագան, Կոմունիզմի լուսավոր գագաթները։

1905 թվականին Ստալինը Տամերֆորսում հանդիպում է Լենինի հետ։ Պատին փակցրված է այդ հանդիպումը պատկերող մի նկար։ Երկրորդ դահլիճի կենտրոնում դրված է Գորիի այն փոքրիկ տնակի մակետը, որտեղից ծագեց մարդկության կյանքի արևը, որտեղ ծնվեց Մեծ Ստալինը։

Պատմում է ընկեր Բարսամյանը... Եվ երեխաների հիշողության մեջ վերակենդանանում է մեծ առաջնորդի հերոսական կյանքը։

Հավաքույթը շարունակվում է։

Հնչում է պիոներուհի Նազիկ Խաչատրյանի հուզմունքով լի ձայնը.

— Սիրելի Ստալինի մահը մեծ վիշտ պատճառեց մեզ։ Բայց մենք գիտենք, որ նա մեզանից բաժանվեց միայն ֆիզիկապես։ Նա այժմ էլ մեզ հետ է, մեր էության մեջ, մեր հոգում։ Ստալինն անմա՛հ է։ Մենք բարձր կպահենք մե՛ր թանկագին, անսահման սիրելի հոր պայծառ հիշատակը։

— Այսօր աշխարհը արցունքախառն է,
Կանգնած է մի պահ միտքդ անել,







Ճշմարտությունն այս անսահման դառն է
Եվ անհնար է արտասանել...

*Արտասանում է Ռիտա Նազարյանը Մարո Մարգարյանի «Մենք խոստանում ենք» բանաստեղծությունը: Ռիտայի ձայնը հուզմունքից դողում է. «Ճշմարտությունն այս անսահման դառն է» նաև Ռիտայի համար: Ուսանավորը կարդալիս նրա աչքերը արցունքոտվում են: Այո՛, այսօր աշխարհը արցունքախառն է:*

*Գեն Բորյանի «Դու կենդանի ես, դու չես մահացել» բանաստեղծությունը:*

Մահը անզոր է քո անվան դիմաց,
Չէ՞ որ սանձել ես մահերն աշխարհում.
Կործանել չարի գահերն աշխարհում,
Եվ քո գործերով դու անմահացած
Նոր կյանքի հզոր արևն ես դարձել,
— Դու կենդանի ես, դու չե՛ս մահացել:

*Սովորել գերազանց, ստանալ միայն 4 և 5 գնահատական, օրինակ ծառայել բոլորի*



Երևան: Լենինի հրապարակում Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ թաղման օրը:

*Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

— Օ՜, ո՛չ, չե՛մ ուզում լսել բառերն այս:
Ո՞վ կհավատա թեկուզ մի վայրկյան,
Թե այն ձեռքը, որ շարժեց դարերը
Կարող է լինել ուժասպառ ընկած:

*Քերոբյան Սվետլանան կարդում է Ստալինյան մրցանակի լաուրեատ Գևորգ Էմինի բանաստեղծությունը:*

*Այո, ո՞վ կհավատա, թե այն ձեռքը, որ դարեր է շարժել, կարող է ուժասպառ լինել, ո՞վ կհավատա, թե Ստալինը չկա: Ոչ ո՛ք:*

*Այդ է հաստատում Սվետլանա Գևորգյանի հնչեղ ձայնը, որ արտասանում է Գուրհամար. այս մասին խոսեցին Գայանե Մամյանը, Վերժինե Մարտիրոսյանը, Թերեզա Սերոբյանը և Լուսիկ Հակոբյանը:*

*— Մեր ջոկատը կրում է անմահ Ստալինի անունը,— ասում է Թերեզան,— այժմ երբ մեր սիրելի հայրը հեռացել է մեզանից, մենք է՛լ ավելի բարձր պետք է պահենք մեր ջոկատի դրոշը, որի վրա Ստալին է գրված: Մենք այդ կարող ենք անել գերազանց սովորելով: Մենք խոսք ենք տալիս ստանալ միայն 4 և 5 գնահատականներ:*

*Թխահեր, փոքրիկ Ռոզա Թորոսյանը կարդում է իր բանաստեղծությունը, նվիրված*

Մեծ Ստալինի հիշատակին։ Նա իր վիշտը, իր ապրումներն ու հույզերն է արտահայտում առաջնորդի մահվան առթիվ։ Իսկ իր «Երդում» բանաստեղծությամբ, որ կարդաց Ջեմմա Մուշեղյանը, Ռոզան առաջնորդին երդվում է մինչև վերջ կատարել նրա պատգամները։

«Ստալինն անմահ է» հավաքույթում ամբողջ ջոկատն իր երդման խոսքն ասաց մեծ Առաջնորդի թարմ աճյունի առաջ։

***

Ստալինի մոնումենտ-քանդակի պատվանդանը շրջապատված է պսակների և ծաղիկների բլուրներով։

Սգո այս օրերին բոլորը գալիս են այստեղ՝ մոնումենտի մոտ, պսակներ ու ծաղկեփնջեր դնում պատվանդանին, արտահայտում իրենց անսահման վիշտն ու երախտագիտությունը։

Հավաքույթից հետո այստեղ եկան նաև Ստալինի անվան պիոներական ջոկատի աղջիկները և իրենց ծաղկեփունջը դրին պատվանդանին։

Կանգնած է Ստալինի մոնումենտը Քանաքեռի սարահարթին։ Ներքևում տարածվում է սոցիալիստական Երևանը, մեր ռեսպուբլիկայի հիասքանչ մայրաքաղաքը։

Նայում են աղջիկները ներքև՝ վարդագույն շենքերին, ուղղաձիգ փողոցներին ու հոյակապ հրապարակներին և ամեն ինչում տեսնում Ստալինին, նրա ձեռքի հետքը, նրա հոգատարությունը։ Նայում են նրանք ներքև և տեսնում, թե ինչպես Երևանը շարունակում է կառուցվել նույն թափով։ Այդ Լենինի—Ստալինի պարտիան է շարունակում Առաջնորդի մեծ գործը։ Նրա գործը մնում է։ Ստալինն անմահ է։

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ




# ՋՈԿԱՏԸ ԽՈՍՔ Է ՏԱԼԻՍ

Մարտի վեցի առավոտյան Լ. Պ. Բերիայի անվան դպրոցի միջանցքներում լռություն էր տիրում։ Դասարաններում հավաքված աշակերտուհիները տխուր էին և հուզված։ Նրանք սգում էին մանուկների սիրելի բարեկամ մեծ Ստալինի մահը։ Տխուր են նրանք, շատ տխուր։ Մազերին կապած սև ժապավենները ստվեր են գցում նրանց դեմքերին։

Հնչում է առաջին դասի զանգը։ Ուսուցչանոցից խորը կսկիծով համակված դուրս են գալիս դասատուները և շտապում դեպի դասարանները։

Վեցերորդ «ա» դասարան է մտնում դասղեկ Գևորգյանը։ Աշակերտուհիները, ինչպես միշտ, ոտքի են կանգնում. բայց լուռ են։ Վզկապներին հատիկ-հատիկ կաթում են արցունքները։ Այդպես ոտքի կանգնած նրանք լսում են ուսուցչուհու ոգեշնչված խոսքը։ Նա կարդում է Սովետական Միության Կոմպարտիայի Կենտկոմի, Մինիստրների Սովետի և Գերագույն Սովետի Նախագահության դիմումը ժողովրդին։

Ամբողջ ջոկատը հոտնկայս և լարված լսում է դիմումի արիություն ներշնչող, ծանր վիշտը տոկունությամբ կրելու և մեծ Ստալինի գծած ճանապարհով անշեղորեն ընթանալու խոսքերը։

Անցնում են րոպեներ։ Ջոկատի բոլոր պիոներները նստում են։ Ապա նստարանների վրա մեկը մյուսի ետևից բարձրանում են ձեռքերը։ Բոլորն էլ ուզում են իրենց սրտի խոսքն ասել հանճարեղ Ստալինի մասին։ Բոլորն էլ ուզում են բարձր և անդող ձայնով հավաստիացնել Լենինի—Ստալինի պարտիային, որ ծանր վիշտը չի վհատեցնում իրենց, որ դրանից հետո իրենք է՛լ ավելի լավ կսովորեն, ազնվորեն և մինչև վերջ կծառայեն անմահ Ստալինի վեհ գաղափարներին, կոմունիզմի կառուցման իսկական մարտիկներ կդառնան...

*Ոտքի է կանգնում ջոկատի խորհրդի նախագահ Էմմա Հովհաննիսյանը։ Նա սկզբում չի կարողանում զսպել հուզմունքը։ Բայց հայացքը հառելով գրատախտակին գրված անմահ անվանը, զգաստանում է և խոսում.*

*— Մեծ Ստալինն իր ամբողջ կյանքը նվիրեց մեզ համար երջանիկ կյանք ստեղծելու գործին։ Մենք այսօր վայելում ենք նրա ստեղծած երջանիկ կյանքը։ Այս վշտալի օրը մենք երդվում ենք, որ կբազմապատկենք մեր ուժերը ուսման գործում և մեր հարազատ Ստալինի արժանավոր զավակները կդառնանք։ Խոսք ենք տալիս, որ բազմաթիվ հայրենասեր հերոսների նման, մենք էլ Ստալինի անունը մեր շուրթերին կգնանք դեպի կոմունիզմ։ Մենք չենք խնայի մեր ուժերը, մեր կյանքը անսահմանորեն սիրելի հայր Ստալինի պայծառ հիշատակը պիոներական փառավոր գործերով հավերժացնելու համար։*



Միկոյանի անվան ջոկատը իրագործում է իր տված խոստումը։

*Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

*Այնուհետև խոսք է խնդրում Բելա Ավետյանը։*

*— Շատ ծանր է մեր կորուստը,— հուզմունքից թրթռացող ձայնով ասում է նա.— բայց մենք խուճապի չենք մատնվի։ Մենք թույլ չենք տա, որ մեր արցունքներով ուրախանա թշնամին։ Մեր հայրերն ու մայրերն իրենց աշխատանքով, իսկ մենք գերազանց սովորելով ցույց կտանք, որ Ստալինը մեզ հետ է, նա անմահ է։ Մեր ջոկատում ոչ մի երկուս ունեցող չկա։ Երեքներ ունեցողներ կան։ Ես նրանց անունից խոսք եմ տալիս, որ լավ կսովորեն և բարձր կպահեն մեր ջոկատի պատիվը։ Մենք լավ կկատարենք մեր հարազատ Ստալինի պատգամները...*

*Մեծ Ստալինի թաղումից հետո անցել են օրեր։ Եվ երբ հիմա լսում ես ջոկատի պիոներների խոսքը, զգում ես, որ նրանք երբեք չեն թուլացնի իրենց ուժերը, չեն պակասեցնի եռանդը ուսման բարձունքներին հասնելու համար։*

*Ջոկատն այս օրերին ավելի միաձույլ է դարձել, աղջիկներն ավելի հարազատ ու մտերիմ են դարձել իրար։*

*— Այդպես միաձույլ էլ կմընանք,— ասում է Լիդիա Մարգարյանը,— ավելի մեծ սիրով կօգնենք միմյանց, ավելի եռանդուն պայքար կմղենք ցածր գնահատականների դեմ։ Ես և մի քանի աշակերտուհի օգնում ենք նրանց, որոնք երեքներ շատ ունեն։ Իսկ երբ մեկն ու մեկը պատահմամբ երկուս է ստանում, իսկույն հասնում ենք օգնության։ Մեծ Ստալինի հիշատակը մեզ վրա պարտք է դնում բոլոր ետ մնացողներին առաջ տանել և սովորել շատ ավելի լավ, քան մինչև հիմա։*

*Զինա Պողոսյանն էլ մյուսների նման լըցված է շատ լավ սովորելու ցանկությամբ։ Նա առաջին քառորդում առարկաների մեծ մասից երեք ուներ։ Հետո տեսնելով, թե ինչպես են սովորում իր ընկերուհիները, զգաց, որ ինքն էլ կարող է լավ սովորել։ Նա ուժերը լարեց և սկսեց «4» և «5»-ի սովորել։ Պատմությունից նա երեք էր ստանում, իսկ հիմա միշտ հինգերն են շարվում նրա օրագրում։*

*— Սիրելի Ստալինի մահն ինձ ավելի զգաստացրեց։ Ես նույնպես կլարեմ բոլոր ուժերս և կսովորեմ այնպես, որ դառնամ գերազանցիկ։*

*Դասարանի պատին, գրատախտակի վերևում, մինչև հիմա էլ կախված է առաջնորդի նկարը։ Ջոկատի պիոներներն ամեն օր անհուն սիրով նայում են Մեծագույն մարդու հարազատ դիմագծերին և նոր լիցք ստանում ու թարմ ուժերով լծվում ուսման գործին։*

*Անցել են օրեր այն պահից, երբ դպրոցի Բաղրամյանի անվան պիոներական դրուժինան ստալինաբար աշխատելու և սովորելու բուռն ցանկությամբ հեռագիր ուղարկեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմին։*

*Եվ ջոկատի, ինչպես նաև դրուժինայի պիոներները կատարում են իրենց խոսքը, որ տվել են Հայրենիքին Մեծ Ստալինի մահվան օրը։*

Վ. ՏԱԼՅԱՆ




## ՄԵՆՔ ԵՐԴՎՈՒՄ ԵՆՔ

Սիրելի հայր և ուսուցիչ ընկեր Ստալինի մահվան լուրը խորապես ցնցեց մեր մատաղ սրտերը: Ամբողջ աշխարհի հետ միասին մեր դպրոցը սգո ծանր օրեր ապրեց:

Ստալին անունն այնքան թանկ է մեզ համար, որ մենք չենք հավատում, թե նրա մեծ սիրտը դադարել է բաբախելուց:

Մեծ առաջնորդին ամենից շատ սիրում էինք մենք՝ պիոներներս: Չէ՞ որ նա է տվել մեզ այս ուրախ ու երջանիկ կյանքը: Նա է մեզ ասել՝ սովորել միայն գերազանց:

Մեր անմահ առաջնո՛րդ, դու քո մեծ կյանքը նվիրեցիր մեր երջանիկ ներկային և պայծառ ապագային:

Մենք երդվում ենք, որ կկրկնապատկենք մեր եռանդը, այսուհետև կձգտենք սովորել միայն գերազանց գնահատականներով, կաշխատենք է՛լ ավելի ամրապնդել գիտակցական կարգապահությունը և խտացնել պիոներական շարքերը:

Քո անմահ հիշատակը հավերժացնելու համար մենք խոսք ենք տալիս է՛լ ավելի լավ սովորել, որպեսզի դառնանք Սովետական Հայրենիքի ազնիվ և պիտանի քաղաքացիներ, քո մեծ գործն արժանի շարունակողներ:

*Պռոշյանի անվան դպրոցի 7-րդ «դ» դասարանի աշակերտուհի ՍԻՐՎԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*6-րդ «դ» դասարանի աշակերտուհի ՀԱՅԿՈՒՇ ՍԵՐՈԲՅԱՆ*







Մոսկվայի պիոներները ծաղկեփնջեր են մատուցում Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻՆ նրա ծննդյան յոթանասունամյակի օրը:

# ՄԵՆՔ ՍՈՎՈՐ ԷԻՆՔ

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

Մենք սովոր էինք քեզ տեսնել կյանքում
Մեզ ջերմ, հայրական սիրով ժպտալիս,
Քո պայծառ ժպտից աշխարհն էր ծաղկում,
Արևն էր ասես մեզ համբույր տալիս:

Դպրոց էր գնում աշակերտն անհոգ,
Բանվորն շտապում դեպի գործարան,
Մի տենչանք ուներ կյանքում ամեն ոք
Իր սրտի խորքում վառ պահում էր այն.

Լինել գործի մեջ միշտ առաջավոր,
Որ բախտ վիճակվեր երջանիկ մի օր՝
Թռչեր թև առած ու Մոսկվա հասներ
Քեզ, մե՛ծ առաջնորդ, Կրեմլում տեսներ...

Դու սիրում էիր մեծերին բոլոր
Տալ քո մեծ սրտի խորհուրդները խոր,
Իսկ փոքրիկներին ժպտադեմ նայել,
Սիրող հոր նման գրկել, փայփայել...

Հիմա... անխռով, լուռ, դամբարանում,
Լենինի կողքին, մեծ Լենինի հետ,
Մի խաղաղ քնով, ո՛վ դու մեծանուն,
Անմահ առաջնորդ, ննջում ես հավետ...

Ո՛չ, դու չես մեռել, միշտ ապրում ես դու,
Դու մեզ թողել ես երկիր մի շքեղ,
Քո մեծ պարտիան է մեզ առաջնորդում
Քո լույս ուղիով հաստատ ու անշեղ:

Դու միշտ մեզ հետ ես, մեր կուռ շարքերում,
Մեր հուր սրտերում, մեր նոր երգերում,
Մեր ստեղծագործ, շինարար կյանքում
Եվ ամենօրյա մեր աշխատանքում...

Մեր հոգու մեջ է քո ջինջ պատկերը.
Մենք խոսք ենք տալիս, անմա՛հ առաջնորդ,
Կատարել թողած քո պատգամները,
Քո խորհուրդները խոր ու լուսահորդ:

...Բայց տառապած մարդու համար չէր ճառագել մի արեվ,
Մարքսի նրման ճանանչափայլ, էնգելսի պես հանճարեղ,
Լենինի պես բոցակորով, Լենինի պես լուսահորդ,
Եվ քե՛զ նման հրսկա ու մեծ, ո՛վ պողպատե Առաջնորդ:
Չի՛ խավարի ծիրանավառ հորիզոնում պատմության
Ձեր հանճարի արեգնային չորրորդությունը տեսան:
Կըծավալվի նա անսահման, հավերժաբար կարեվի,
Եվ կպատռի մըշուշն անցյալ եվ ապագա դարերի:

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

# ՀՈՍՊԻՏԱԼՈՒՄ

(Հատված «Սպիտակ Կեչին» վեպի 2-րդ մասից)

*Մ. ԲՈՒԲԵՆՆՈՎ* — *Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

*...Ստալինը մեր պաշտպանության առաջավոր գիծն ուղևորվելիս Վոլոկոլամսկի խճուղու վրա գտնվող մի մեծ գյուղի մի քարե շենքի դռան վերևում տեսավ սպիտակ փոքր դրոշ՝ վառ կարմիր խաչը կենտրոնում: Դա բանակի դաշտային հոսպիտալն էր: Ստալինը անսպասելիորեն հրամայեց կանգնեցնել մեքենան: Մի քանի րոպե հետո նա արդեն այն պալատումն էր, որտեղ գտնվում էին վերջին մարտերում վիրավորվածները:*

*Զորս հոգի կային այդտեղ: Բոլորն էլ պառկած էին մի շարքով դասավորված հիվանդանոցային սպիտակ, միանման մահճակալների վրա, որոնց միջև թողնված էր անցնելու տարածություն, իսկ սնարները անլուսամուտ պատի տակ էին: Դիմացի պատն ուներ երկու հարավակողմ պատուհան, և վիրավորները, առանց գլուխները բարձրացնելու, տեսնում էին, թե ինչպես խճուղու մյուս կողմից, տների վրայով, ցածից անցնում է կարմրավուն արևը:*

*Երբ Գերագույն Գլխավոր Հրամանատարը գեներալների, հոսպիտալի պետի և հերթապահ բժշկի ուղեկցությամբ հանկարծակի երևաց պալատում, վիրավորներն անասելի հուզվեցին: Զորսն էլ միաժամանակ բրդե վերմակների տակից հախուռն շարժումներ գործեցին՝ առանց մտածելու, ենթարկվելով այն մտքին, որ վեր կենան և Ստալինին զինվորական ձևով դիմավորեն. բայց միայն մեկը, որի կուրծքն ու վիզը շապկի տակից վիրակապված էին, դժվարությամբ նստեց մահճակալի վրա... Մյուս երեքը մի անգամ ես զգացին իրենց անզորությունը: Հիմա դա առանձնապես ծանր էր նրանց համար: Նրանք կարողանում էին անծպտուն տանել ամեն տեսակ ֆիզիկական ցավ, բայց չէին կարող թաքցնել այն հոգեկան կսկիծը, որ զգում էին այժմ, երբ ուժը չէր պատում կանգնած դիմավորելու Ստալինին. մեկը ցավագին տնքոցով հառաչեց, մյուսը գլուխը սրտամորմոք օրորեց բարձի վրա, երրորդն էլ դառնությամբ սեղմեց ատամները...*

*Ստալինը նկատեց, որ վիրավորները հուզված են:*

*— Բարև ձեզ, ընկերնե՛ր, բարև ձեզ,— դրա համար էլ մի փոքր ուրախ շեշտով ասաց նա՝ կանգ առնելով դռան մոտի մահճակալի կողքին, որի վրա նստած երիտասարդ վիրավորի լայն այտոսկրներով դեմքն արտահայտում էր զարմանք ու երջանկություն:*

*— Բայց ես ձեզնից, ընկերնե՛ր, մի մեծ խնդրանք ունեմ, դուք պետք է հանգիստ պառկեք...— ասաց նա, երբ վիրավորները պատասխանեցին նրա ողջույնին:— Այո,*



այո, դուք պետք է պառկեք։ Իսկ մենք կարող ենք և պարտավոր ենք կանգնել ձեր առաջ...

Մահճակալին նստած վիրավորի մոխրագույն արագաշարժ աչքերի մեջ շփոթվածության արտահայտություն նշմարվեց։

— Թույլ տվեք, ընկե՛ր Ստալին, որ ես նստեմ,— ասաց նա՝ նիհար մատներով բռնելով մահճակալի եզրը։— Ազնի՜վ խոսք, ձանձրացել եմ պառկելուց։ Կարծեմ չորրորդ օրն է...

—Լավ, նստեցեք,—համաձայնեց Ստալինը։— Ինչպես տեսնում եմ՝ ձեր գլուխը վերջերս է խուզված...։ Դուք հրամանատա՞ր եք։

— Ճիշտ այդպես։ Գվարդիայի լեյտենանտ...

—Ազգանո՞ւնը։

— Մուրաշով։

Ստալինը նայեց հերթապահ բժշկին, և սա հապճեպորեն զեկուցեց, որ Մուրաշովը մի քանի բեկորային վերք ունի փափուկ հյուսվածքների մեջ. նախանցյալ օրը հանել են երկու բեկոր, չորս հատ էլ թողել են մինչև հաջորդ վիրահատումը։

— Դե թող խրված էլ մնան,— հանկարծ աշխուժանալով վրա բերեց Մուրաշովը, և Ստալինն իսկույն հասկացավ, որ իր առաջ նստած է չընկճվող ու հավանորեն կյանքում ուրախ-զվարթ մի երիտասարդ։— Ավելի պինդ կլինեմ, և ուրիշ ոչինչ։ Այն ժամանակ գուցե միայն զրահահա՞րը խոցի ինձ...

— Վաղո՞ւց եք դուք ճակատում, ընկե՛ր Մուրաշով։

— Պատերազմի առաջին օրից, ընկեր Ստալին։

— Առաջին անգա՞մն եք շարքից դուրս եկել։

— Ճիշտ այդպես։

— Ասացեք, ընկե՛ր Մուրաշով,— շարունակեց Ստալինը՝ ձեռքը դնելով մահճակալի թիկնակին,— պատերազմի ո՞ր շրջանն ամենից ավելի դժվար էր ձեզ համար։

— Առաջին ամիսը, ընկե՛ր Ստալին։

— Հասկանալի է։ Հիմա՞ ինչպես է։

Մուրաշովը հառաչեց, բայց ժպտալով պատասխանեց.

— Կռվելը հիմա էլ հեշտ չէ, իհարկե, անկեղծությամբ եմ ասում։ Գերմանացիները դեռևս տեխնիկայով շատ են գերազանց։ Նմանապես և ծանր բան է, որ դրանք այնքա՜ն մոտ են Մոսկվային։ Այնուամենայնիվ կռվելը հիմա ավելի հեշտ է, քան նույնիսկ մեկ ամիս առաջ...

— Իսկ ինչո՞ւ, այնուամենայնիվ, հեշտ է,— հարցրեց Ստալինը։

— Նախ, ընկե՛ր Ստալին, մենք հիմա նույնը չենք,— պատասխանեց Մուրաշովը։— Մեր ռազմիկներն այդ ֆաշիստ կոչեցյալներին բավականաչափ տեսան դեմ առ դեմ, փաստերով իմացան, թե ովքեր են նրանք, և լավ, շատ լավ հասկացան, թե ինչ է սպառնում մեր երկրին... Եվ բոլորն էլ կատաղի են դարձել, կռվում անողոք։ Դրանից կարծես թե ուժերս էլ ավելացավ։ Եվ բոլորն էլ հասկացան, որ իսկապես, ինչպես դուք եք ասել, այնքան սարսափելի չէ սատանան, ինչպես պատկերում են նրան... Հիմա մեզ մոտ բոլորն էլ իմանում են, որ գերմանական բանակի անպարտելիության վերաբերյալ խոսքերը հիմար հեքիաթ են, դատարկ շաղակրատանք։ Հիմա գերմանացիները փախչում են մեզնից, և ինչպե՜ս են փախչում։ Ահա դրա համար էլ ավելի հեշտ է դարձել...

— Իսկ երկրո՞րդը,— հարցրեց Ստալինը։

— Երկրորդն էլ այն, որ հիմա գերմանացիներն էլ նույնը չեն...— շարունակեց Մուրաշովը։— Կարճ ասած՝ հասկացել են, որ ավազակություն անելը վտանգավոր բան է։ Ես առիթ եմ ունեցել, ընկե՛ր Ստալին, խոսել գերիների հետ։ Դեռևս մեկ ամիս առաջ նրանք հավատում էին, որ շուտով կգրավեն Մոսկվան, իսկ հիմա դրա մասին չեն էլ մտածում...

—Նույնիսկ չեն է՞լ մտածում։

— Ճիշտ այդպես։

Մուրաշովին լսելիս Ստալինը մի քանի անգամ նայեց մյուս վիրավորներին՝ կարծես ջանալով հասկանալ, թե ինչպես են վերաբերվում լեյտենանտի դատողություններին։

—Ահա սրանք կարող են հաստատել դա,— ասաց Մուրաշովը՝ շրջվելով դեպի պալատի իր ընկերները։— Ճիշտ չե՞մ ասում, տղե՛րք։

Կողքի մահճակալին պառկած էր աջ բազուկը կտրված, խիստ դժգույն մի վիրավոր։ Նա հուզվեց, երբ նրան մոտեցավ Ստալինը, բայց այդ հուզմունքից անգամ նրա լայն ու բարի դեմքի վրա արյան նշույլ չերևաց։ Միայն վերմակի տակ, կրծքի վրա երեք անգամ հաջորդաբար ցնցվեց նրա այժմ արդեն միակ ձեռքը։

Նա ցած ձայնով հաստատեց.

— Ճիշտ է, կարգին թուլացել է գերմանացին...

Հետևյալ մահճակալին անշարժ պառկած էր գլուխը վիրակապված մի մարտիկ. բաց էին մնացել միայն համառ բերանը, կռվարարի ցցված քիթը և խոշոր, մուգ, սալորանման աչքերը։ Վաղուց էր նա սպասում, թե Ստալինը երբ կմոտենա իր մահճակալին, և նույնիսկ անհամբերությունից ու երջանիկ րոպեի սպասումից ամբողջովին նվաղել էր։

Նա էլ հուզվելով պատասխանեց.

— Խռխռում է գերմանացին. հիմա նրան խփելու իսկական ժամանակն է։

Ստալինն աջ ձեռքի թեթև շարժումով կանչեց հերթապահ բժշկին, որը պատրաստվում էր զեկուցել այդ երկու վիրավորների վիճակի մասին. առանց այդ զեկուցման էլ պարզ էր, որ նրանց դրությունը ծանր է, որ նրանք ընդմիշտ դուրս են եկել շարքից։ Եվ Ստալինը ծածուկ հառաչելով՝ շատ զգույշ, որպեսզի չմորմոքի այդ մարդկանց ամենամեծ՝ հոգեկան վերքերը, որ մոռացել էր բժիշկը, սկսեց հարցնել՝ որտեղացի՞ են, ի՞նչ էին անում պատերազմից առաջ և որտե՞ղ էին, ինչպե՞ս են ապրում նրանց ընտանիքները, երեխաներ ունե՞ն, հարազատներից նամակ ստանո՞ւմ են, պարգևատրության ներկայացվա՞ծ են թե ոչ...

Չորրորդ մահճակալին, պատի մոտ, պառկած էր Մաթվեյ Յուրգինը։ Նա պառկած էր բարձր, մի քանի բարձի վրա, մինչև կուրծքը վերմակով ծածկված և նայեց իրեն մոտեցող Ստալինին զմայլանքի այն արտասովոր, անսպասելի արտահայտությամբ, երբ համարյա թե անկարելի է ճիչը զսպել...։ Կարծես թե նա առաջին անգամ Ստալինին տեսավ պալատում։ Եվ Ստալինը հասկացավ, որ այն մի քանի րոպեի ընթացքում, երբ ինքը խոսում էր վիրավորների հետ, Յուրգինը ինքնամոռացման մեջ էր, և նրա գիտակցությունը նոր վերադարձավ։

— Այդ դո՞ւք... եք,— հարցրեց Յուրգինը՝ սվսվալով ու տաք շնչելով։— Մի՞թե... ճիշտ է։

—Այո, ես եմ,—պատասխանեց Ստալինը։

Ուշադիր նայելով Յուրգինի հողագույն-դեղին դեմքին, որի նիհար այտոսկրների վրա սուր ցցվել էին սև մազերը, և շլացուցիչ, տենդային փայլ արձակող աչքերին՝ Ստալինը հասկացավ, որ վիրավորի կյանքը վտանգի մեջ է։ Ստալինի հայացքը վայրկենապես մթնեց, նա հոգնած նստեց մահճակալի մոտի նստարանին, զգուշությամբ ուղղեց Յուրգինի գլխատակի բարձը և հարցրեց.

— Ծա՞նր է։

Յուրգինը հայացքով միայն պատասխանեց Ստալինին. այո, նա չի կարող ստել՝ շատ դժվար է պայքարել մահվան դեմ, և նույնիսկ դեռ չի իմանում, թե ով հաղթող դուրս կգա այդ պայքարից...

— Գոտեպնդվեցեք,— ասաց Ստալինը։

Ընդունելով այդ խորհուրդը՝ Յուրգինը



բավական թեթև իջեցրեց թարթիչները, բայց իսկույն էլ հայացքով խնդրեց Ստալինին հակվել իր վրա, իսկ երբ Ստալինը կատարեց նրա խնդրանքը, շշուկով հարցրեց.

— Շո՞ւտ կլինի։

Ստալինը հասկանալով հարցումը՝ է՛լ ավելի հակվեց Յուրգինի վրա և նույնպես շշուկով պատասխանեց.

— Շատ շուտ...

Բոլոր վիրավորներին ապաքինում ցանկանալուց հետո Ստալինը դուրս եկավ պալատից, գնաց հերթապահ բժշկի առանձնասենյակը և կանգնելով լուսամուտի մոտ՝ մի րոպե լուռ նայեց արևից արծաթափայլ ձմեռային անտառին... Ապա առանց շրջվելու՝ ցած ձայնով հարցրեց եռևում կանգնած հերթապահ բժշկին.

— Կապրի՞ նա։

Բժիշկը հանցավորի շեշտով պատասխանեց.

— Ոչ մի հույս չունենք մենք...

Ստալինը հանկարծ շրջվեց և ասաց.

— Դուք պե՛տք է հույս ունենաք։

Ապա կամացուկ, հուզված ավելացրեց.

— Անմա՜հ ժողովուրդ։

Թարգմ. Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ

1953 թվականի մարտի 5-ին վախճանվեց սովետական ժողովրդի և ամբողջ աշխարհի աշխատավորների մեծ ուսուցիչ և առաջնորդ ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը։

Ի. Վ. Ստալինը ծնվել է 1879 թվականի դեկտեմբերի 21-ին Գորի քաղաքում։ 1888 թվականին նա ընդունվում է Գորու հոգևոր սեմինարիան և ավարտում է 1894 թվականին։ Նույն տարին նա ընդունվում է Թիֆլիսի հոգևոր սեմինարիան։

Դեռևս 1895 թվականին երիտասարդ Ստալինը կապ է հաստատում Անդրկովկաս աքսորված ռուս ռևոլյուցիոն մարքսիստների գաղտնի խմբերի հետ, ղեկավարում է Թիֆլիսի հոգևոր սեմինարիայի աշակերտների մարքսիստական խմբակները, ուսումնասիրում Մարքսի և Էնգելսի աշխատությունները, ծանոթանում Վ. Ի. Լենինի վաղ շրջանի երկերին։ Այդ ժամանակ Ստալինն արդեն ուսումնասիրում էր փիլիսոփայություն, քաղաքատնտեսություն, պատմություն, բնական գիտություններ, շատ էր կարդում գեղարվեստական գրականություն։ Նա բոլոր առարկաներից ուներ «գերազանց» գնահատական։

1898 թվականին Ստալինը մտնում է վրացական սոցիալ-դեմոկրատական «Մեսամե-դասի» կազմակերպության մեջ։ Իր զինակիցներ Կեցխովելու և Ծուլուկիձեի հետ միասին նա դնում է ռևոլյուցիոն մարքսիստական փոքրամասնության կորիզի հիմքը։ Այդ ժամանակ էլ Ստալինը գլխավորում էր Թիֆլիսի Գլխավոր Երկաթուղային Արհեստանոցների բանվորական մարքսիստական խմբակը։ Ռևոլյուցիոն աշխատանքները ղեկավարելու համար 1899 թվականին Ստալինին հեռացնում են հոգևոր սեմինարիայից։

Նրա ղեկավարությամբ կազմակերպվում է ՌՍԴԲՊ Թիֆլիսի ղեկավար կենտրոնական խումբը, որը բանվորներին սովորեցնում էր ցարական կառավարության և կապիտալիստների դեմ մղվող պայքարի ձևերը։ Ստալինի ղեկավարությամբ խումբը տպագրում է թռուցիկներ և տարածում բանվորների մեջ, ղեկավարում է Թիֆլիսի բանվորների գործադուլներն ու քաղաքական պայքարը։

Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ Բաքվում, 1901 թվականին ստեղծվում է «Բրձոլա» թերթը։ Ստալինյան «Բրձոլան» Լենինի հրատարակած «Իսկրա» թերթից հետո լավագույն մարքսիստական թերթն էր Ռուսաստանում։ «Բրձոլայի» էջերում ընկեր Ստալինը պաշտպանում էր Լենինին և մերկացնում, ջախջախիչ հարված էր հասցնում մարքսիզմի բոլոր թշնամիներին։ Ընկեր Ստալինը հիմնադրեց Բաթումիի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը։ Նա 1902 թվականի մարտին կազմակերպեց բանվորների վեցհազարանոց ցույցը, որը ոստիկանության հետ արյունալի ընդհարման վերածվեց։ Այդ քաղաքական խոշոր ցույցը ղեկավարելու համար ընկեր Ստալինը ձերբակալվեց։ Դա նրա առաջին բանտարկությունն էր։ 1903 թվականին ցարական կառավարությունը նրան աքսորում է Սիբիր՝

Իրկուտսկ։ 1904 թվականի հունվարի սկզբներին նա փախչում է աքսորավայրից և վերադառնում Թիֆլիս, որտեղ գլխավորում է ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական կոմիտեի աշխատանքը։

Ընկեր Ստալինը ղեկավարում է Բաքվի բանվորների 1904 թվականի քաղաքական ընդհանուր գործադուլը։ «Բաքվի գործադուլը,—ասել է ընկեր Ստալինը,— ազդանշան ծառայեց ամբողջ Ռուսաստանում հունվար-փետրվարյան պանծալի ելույթների համար»։ Ռուսական առաջին ռևոլուցիայի տարիներին Ստալինը Անդրկովկասի աշխատավորությանը վճռական պայքարի դուրս բերեց ցարական ինքնակալության դեմ։ Հետևյալ տարվա դեկտեմբերին Ստալինը մասնակցեց պարտիայի Տամերֆորսյան կոնֆերենցիային, որտեղ անձամբ ծանոթացավ Լենինի հետ և աշխատում էր նրա ղեկավարությամբ։



Ընկերներ Ի. Վ. Ստալինը, Մաո Ցզե-դունը և Գ. Մ. Մալենկովը։ Նկարված են 1950 թ. փետրվարի 14-ին բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության Սովետա-Չինական Պայմանագրի ստորագրման ժամանակ։

Պարտիայի հինգերորդ համագումարից հետո ընկեր Ստալինը փոխադրվում է Բաքու և ղեկավարում արդյունաբերության այդ խոշոր կենտրոնի ու Անդրկովկասի բոլշևիկների աշխատանքը։ 1905—1908 թվականներին նա խմբագրել և ղեկավարել է ավելի քան 15 բոլշևիկյան թերթ, գրել է շատ հոդվածներ։

Ստալինը գտնվում էր աքսորում, երբ Պրագայում գումարվեց պարտիայի պատմական 6-րդ կոնֆերենցիան։ Պրագայի կոնֆերենցիան ընկեր Ստալինին հեռակա կարգով ընտրեց Կենտկոմի կազմում և Կենտկոմի ռուսական բյուրոյի ղեկավար։

1912 թվականին Վոլոգդայի աքսորից փախչելով ընկեր Ստալինը գալիս է Բաքու և Թիֆլիս ու նորից ղեկավարում Անդրկովկասի բոլշևիկների գործունեությունը։ Շուտով նա մեկնում է Պետերբուրգ, խմբագրում է «Զվեզդան» և ապա հիմնադրում բոլշևիկյան «Պրավդա» թերթը։

Ստալինը Պետերբուրգում նորից է ձերբակալվում և աքսորվում։ Շուտով նորից փախչում է աքսորավայրից և գալիս Պետերբուրգ։ Այստեղ նա պարտիական աշխատանքներ է կատարում, կազմակերպում է պայքար մենշևիկների դեմ, խմբագրում «Պրավդա»-ն։

1913 թվականին Ստալինը մասնակցում է պարտիայի Կրակովի խորհրդակցությանը, ապա մեկնում է Վիեննա։ Արտասահմանում եղած ժամանակ էր, որ ընկեր Ստալինը գրեց իր ազգային հարցի վերաբերյալ հանճարեղ աշխատությունը։ Այդ տարվա փետրվարին Ստալինը նորից է ձերբակալվում։ Նրան աքսորում են Տուրուխանի շրջանի Կուրեյկա ավանը, հենց բևեռային շրջանի մոտ, որտեղ նա մնում է մինչև 1917 թվականի մարտ ամիսը։ Սիբիրյան հեռավոր աքսորից Ստալինը ղեկավարում է պարտիական կյանքը։ 1917 թվականի մարտին նա վերադառնում է Պետերբուրգ, ղեկավարում «Պրավդա» թերթի աշխատանքները։ Այդ պատասխանատու ժամանակ, երբ Լենինը դեռևս արտասահմանում էր, Ստալինը պարտիային համախմբում է պայքարելու բուրժուա-դեմոկրատական ռևոլուցիան սոցիալիստականի վերածելու համար։ 1917 թվականի պարտիայի ապրիլյան կոնֆերենցիայում ընկեր

Ստալինն ընտրվեց պարտիայի Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ։ Վեցերորդ համագումարում, որը պատմության մեջ մտավ որպես զինված ապստամբության նախապատրաստման համագումար, նա հանդես եկավ պարտիայի Կենտկոմի հաշվետու զեկուցումով և քաղաքական դրության հարցի վերաբերյալ զեկուցումով։

Զինված պարտիայի վեցերորդ համագումարի մարտական որոշումներով, Ռուսաստանի պրոլետարիատը պարտիայի և նրա առաջնորդներ Լենինի ու Ստալինի ղեկավարությամբ տապալեց բուրժուա-կալվածատիրական կարգերը և մարդկության պատմության մեջ առաջին անգամ հաստատեց բանվորների ու գյուղացիների իշխանություն՝ Սովետական իշխանություն։

Ամերիկյան և անգլիական իմպերիալիստները որոշեցին տապալել սովետական կարգերը և Ռուսաստանում նորից վերականգնել կալվածատերերի ու կապիտալիստների ստրկական ռեժիմը։ Իմպերիալիստները, երկրի ներսում մնացած կոնտրռևոլյուցիոն ուժերի հետ միասին, դուրս եկան սովետական իշխանության դեմ։ Սկսվեցին քաղաքացիական կռիվները։ Այդ ծանր օրերին պարտիան Լենինի և Ստալինի ղեկավարությամբ համախմբեց բոլոր ուժերը և ջախջախեց ամերիկյան և անգլիական ինտերվենտների ու սպիտակ գվարդիականների բանակները։ Պարտիայի հանձնարարությամբ Ստալինը ղեկավարեց Կոլչակի, Դենիկինի, Յուդենիչի և այլ սպիտակ գվարդիական ուժերի դեմ մղվող պայքարը։ Քաղաքացիական կռիվներից մեր հայրենիքը հաղթանակով դուրս եկավ։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո ընկեր Ստալինը ղեկավարում էր նաև Ազգությունների ժողկոմատի աշխատանքները։ 1922 թվականի ապրիլի 3-ին պարտիայի Կենտկոմի պլենումը, Լենինի առաջարկությամբ, Կենտկոմի գլխավոր Քարտուղար ընտրեց ընկեր Ստալինին։ Այդ ժամանակվանից սկսած մինչև իր մահը նա աշխատում էր այդ պոստում։

1924 թվականին մահացավ մեծ Լենինը։ Լենինի մահվանից հետո մեծ Ստալինը, անշեղորեն կենսագործելով լենինյան հանճարեղ դրույթները, մեր երկիրը հասցրեց պատմական խոշոր հաղթանակների։

Ստալինի ղեկավարությամբ պարտիան անցավ ժողովրդական տնտեսության վերակառուցմանը։ Մեր երկրում ստեղծված հզոր տեխնիկայի հիման վրա պարտիան հաջողությամբ վերակառուցեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Դրանից հետո անհրաժեշտ էր ունենալ միլիոնավոր մարդկանց բանակ, որը կարողանար թամբել այդ հզոր տեխնիկան և առաջ շարժել։ Նվ Ստալինը լոզունգ տվեց՝ «Կադրերն են որոշում ամեն ինչ»։ Պարտիան եռանդուն կերպով սկսեց ստալինյան լոզունգի կենսագործումը։ Սկսվեց ստախանովյան շարժումը, որը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու նախադրյալներ ստեղծեց։

Մեր երկիրը Ստալինի ղեկավարությամբ հաղթանակով ավարտեց կուլտուրական ռևոլյուցիան և Սովետական Միությունը դարձավ համատարած գրագիտության, բարձր կուլտուրայի երկիր։

Պարտիան Ստալինի ղեկավարությամբ լիկվիդացրեց մեր երկրում շահագործող դասակարգերի վերջին մնացորդները, վերացրեց մարդու շահագործումը մարդու կողմից։ 1936 թվականի դեկտեմբերի 5-ին Սովետների Համամիութենական 8-րդ (արտակարգ) համագումարը հաստատեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության նոր, աշխարհում ամենադեմոկրատական Կոնստիտուցիան, որն իր կերտողի անունով կոչվեց Ստալինյան։

Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդն ավարտեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Պարտիայի 18-րդ համագումարում ընկեր Ստալինը տվեց մեր երկրում կոմունիզմի կառուցման հանճարեղ թեորիան։ Սովետական ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ, զինված ստալինյան հանճարեղ թեորիայով սկսել էր աստիճանական անցումը սոցիալիզմից կոմունիզմին։ Սակայն, այն ընդհատվեց մեր երկրի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակման պատճառով։ 1941 թվականի հունիսից սկըսվեց Հայրենական Մեծ պատերազմը։ Սովետական ժողովուրդը Ստալինի ղեկավարությամբ ջախջախեց ֆաշիստական Գերմա-

նիայի և Յապոնիայի և փրկեց Եվրոպայի ու Ասիայի ժողովուրդներին ֆաշիզմի ստրկական լծից: Ստալինի ցուցումներով դեմոկրատական երկրներն այսօր Սովետական Միության օգնությամբ կառուցում են սոցիալիզմ: Սովետական Միությունը չին մեծ ժողովրդի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ միասին առեղծել է խաղաղության և դեմոկրատիայի մեծ լագերը:

Սովետական ժողովուրդը և ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը առաջնորդվելով Ստալինի հանճարեղ գրույթներով օրեցօր ուժեղացնում են պայքարը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար:

Մեծ Ստալինը դաստիարակեց և իր շուրջը համախմբեց լենինյան-ստալինյան ղեկավարման վարպետությանը տիրապետած կադրերին, որոնք անշեղորեն առաջ կտանեն Ստալինի մեծ գործը:

Բ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

(Պատմական գիտությունների թեկնածու)



Մոսկվա: 1952 թ. մայիսի 1: 612-րդ դպրոցի առաջին դասարանի աշակերտուհի Վերա Կոնդակովան ջերմորեն ողջունում է Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻՆ

## ՍՏԱԼԻՆԻ ՆԿԱՐԻ ԱՌԱՋ

Ես կանգնած եմ պատկերիդ դեմ
Եվ նայում եմ, նայում անվերջ,
Եվ իմ գալիք կյանքն եմ տեսնում
Քո խորն ու ջինջ աչքերի մեջ:

Եվ կարծես թե ամեն անգամ
Դու ժպտում ես ու ինձ ասում.
— Լավ սովորիր, խելո՛ք բալիկ,
Որ չմնաս դու անուսում:

ԳՐԵՏԱ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

*(Մ. Աբեղյանի անվան դպրոցի 4-րդ դասարանի աշակերտուհի— 10 տարեկան)*

## ՀԱՅՐ ՍՏԱԼԻՆԻՆ

Հա՛յր Ստալին, կյանք ես տվել,
Ուսման մեջ էլ սեր ես տվել,
Սովետական մանուկներիս
Ուրախ, զվարթ կյանք ես տվել:

Մենք քեզանով ենք միշտ հպարտ,
Մենք քեզանով ենք միշտ անպարտ,
Մենք զավակն ենք հաղթանակի,
Մենք զինվորն ենք մեծ բանակի:

Կմեծանանք հզոր ու վես,
Ստալինյան հերոսի պես,
Երդվում ենք քեզ, հա՛յր Ստալին,
Մեր սիրելի, մեր թանկագին:

ՎԱՐԴԱՆ ՊՈՂՈՍՅԱՆ

*(Երևանի 26 Կոմիսարների անվան դպրոցի 2-րդ դասարանի աշակերտ)*

# ԻՆՉՊԵՍ ԾԱՆՈԹԱՑԱ ԵՍ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՀԵՏ

Երբ ցույցը վերջացավ, ես և ուրիշ մի քանի երեխաներ մոտեցանք Դամբարանին և սկսեցինք ձեռքերս թափահարել և առաջնորդներին ողջունել:

Հանկարծ տեսա, որ Ստալինը ձեռքը թափահարում է՝ ինձ հրավիրում է իր մոտ: Ես մի փոքր շուտ եկա և մասս դրեցի կրծքիս: «Ե՞ս»: Ստալինը ժպտաց և գլխով նշան արեց: Ես սանդուղքով վեր վազեցի, բարձրացա տրիբունի վրա և մոտեցա Ստալինին: Նա հարցրեց ինձ:

— Ի՞նչ է քո անունը:

— Լենինա:

— Կեցցե՛ս, լավ անուն է:

Հետո Ստալինը հարցրեց, թե ինչ են իմ մայրիկի ու հայրիկի անունները: Այդ ժամանակ հրապարակով անցնում էր նվագախումբը: Վորոշիլովն ասաց.

— Նրանք լավ են նվագում, հարկավոր է ծափահարել:

Ես կանգնած էի Ստալինի և Վորոշիլովի միջև և նրանց հետ միասին ծափ էի տալիս:

Երբ նվագախումբն անցավ, Ստալինը հարցրեց ինձ.

— Իսկ ի՞նչպես պետք է հիմա տուն գնաս:

Ես պատասխանեցի, որ կգնամ մորաքրոջ մոտ և նրանից ճանապարհի փող կվերցնեմ:

— Իսկ ինչքա՞ն փող է հարկավոր քեզ,— հարցրեց Ստալինը:

— Տասը կոպեկ,— պատասխանեցի ես:

Ստալինը որոնեց իր գրպաններում, բայց ոչինչ չգտավ և ժպտալով հարցրեց.

— Քեզ մոտ կա՞, ընկե՛ր Վորոշիլով:

Վորոշիլովը գրպանից մի թուղթ հանեց և մեկնեց ինձ:

Հետո մենք միասին սկսեցինք իջնել Դամբարանի սանդուղքներով:

Ճանապարհին Ստալինը հարցրեց ինձ, ցույց տալով Բուդյոննուն.

— Ո՞վ է նա:

Ես պատասխանեցի, որ նա ընկեր Բուդյոննին է: Ապա նա սկսեց հերթով ցույց տալ ընկեր Վորոշիլովին, Մոլոտովին, Կալինինին, հարցնելով ինձ:

— Ո՞վ է նա:

Ես բոլորին ճանաչեցի:

Հետո ինձ տարան տուն՝ Կունցեվո:

Այդ հանդիպումը ես երբեք չեմ մոռանա:

ԼԵՆԻՆԱ ՎԱՐՇԱՎՍԿԱՅԱ

1936 թ.



Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ պիոներուհի Մամլաքյար Նախանգովայի և Ֆարաբի շրջգործկոմի նախագահ էնե Գեյդեևայի հետ Տաջիկստանի և Թուրքմենստանի առաջավոր կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների խորհրդակցությունում:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՊԻՈՆԵՐ

Սովետական երկրի պիոնե՛ր,
Ծանր է, մեծ է վերքն հոգուդ.
Երբեք այսքան դաժան օրեր
Չես ապրել դու քո կյանքում:

Սովետական երկրի պիոնե՛ր,
Ուր էլ լինես այս ժամին,
Կանգնիր հպարտ ու անվեհեր,
Երդվիր խոսքով սրտագին:

Ստալինի գործի համար
Երդվիր լինել անձնվեր,
— Սխրանքիդ մեջ ապրում է նա,
Սովետական պիոնե՛ր...

Սովետական երկրի պիոնե՛ր,
Ստալինյան դրոշով
Քայլիր դու միշտ, վեր, դեպի վեր՝
Գալիքները լուսաշող...

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# ԿԼԵՄԵՆՏ ԳՈՏՎԱԼԴ



## ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆԸ ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻՆ

Թանկագին ընկերնե՛ր և բարեկամնե՛ր:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահությունը իրենց ցավակցությունն են հայտնում և ձեզ հետ միասին բաժանում են խոր վիշտը Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի Նախագահ, Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի Պրեզիդենտ ընկեր Կլեմենտ Գոտվալդի անժամանակ մահվան առթիվ:

Չեխոսլովակիայի ժողովուրդները և Կոմունիստական պարտիան հանձին ընկեր Կլեմենտ Գոտվալդի կորցրին իրենց մեծ առաջնորդին, Չեխոսլովակիայում ժողովրդա-դեմոկրատական կարգի հաղթանակի և սոցիալիզմի կառուցման անխոնջ ու անվեհեր մարտիկին:

Ամբողջ աշխարհի աշխատավորները զրկվեցին միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչներից մեկից, շարժում, որին ընկեր Կլեմենտ Գոտվալդը նվիրեց պրոլետարական ռևոլյուցիոների իր ամբողջ հիանալի կյանքը:

Ընկեր Կլեմենտ Գոտվալդը անդուլ կերպով աշխատում էր Չեխոսլովակիայի և Սովետական Միության միջև սերտ դաշինքի և անխախտ բարեկամության ամրապնդման հա-





մար, եղբայրական այդ բարեկամության մեջ տեսնելով Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի անկախության ու բարգավաճման երաշխիքը:

Մեծ Ստալինի հավատարիմ զինակից, Սովետական Միության փորձված բարեկամ Կլեմենտ Գոտվալդը Չեխոսլովակիան տանում էր սովետա-չեխոսլովակյան բարեկամության ամրապնդման ուղիով, բարեկամություն, որի մեջ արդարացիորեն տեսնում էր Հայրենիքի ազատության և անկախության գրավականը:

Ծանր կորստի այս վշտալի օրերին մենք հաստատ վստահություն ենք հայտնում, որ Չեխոսլովակիայի ժողովուրդները է՛լ ավելի սերտորեն կհամախմբեն իրենց շարքերը Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի ու կառավարության շուրջը խաղաղության գործի համար, ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման և սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում:

Չեխոսլովակիայի ժողովուրդների հետ միասին վշտանալով ծանր կորստի առթիվ, Սովետական Միության ժողովուրդները իրենց սրտերում կպահպանեն Կլեմենտ Գոտվալդի պայծառ կերպարը, որը միշտ կլինի ժողովուրդների միջև խաղաղության, Սովետական Միության և Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի միջև հավիտենական բարեկամության համար պայքարի ոգեշնչող օրինակ:

| | | |
|---|---|---|
| ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ<br>ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ<br>ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ<br>ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ | ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ<br>ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ |

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը խորին վշտով հայտնում են պարտիային և բոլոր աշխատավորներին, որ մարտի 14-ին ցերեկվա ժամը 11-ին Պրագայում կարճատև ծանր հիվանդությունից հետո վախճանվեց Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի Պրեզիդենտ, Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի Նախագահ, միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ, Չեխոսլովակիայի ժողովուրդների սիրելի առաջնորդ, Սովետական Միության հավատարիմ բարեկամ ընկեր Կլեմենտ Գոտվալդը:

| | | |
|---|---|---|
| ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ<br>ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ<br>ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ<br>ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ | ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ<br>ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ |

*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՏԱԼՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 01366։ Պատվեր 225, տիրաժ 5000, Տպագրական 2½ մամուլ։ Ստորագրված է տպագրության 27. III. 1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.*

# ՔՈ ԴՐՈՇԸ ՎԱՌ

*Խոսք Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ*

*Երաժշտություն Ա. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

Moderato

Մեր ան-մահ Ստա-լին, մեր մեծ ու-սու-ցիչ, Դու հա-վետ կապ-րես մեր սըր-տե-րում ջինջ. Դու տը-վել ես մեզ չըք-նաղ հայ-րե-նիք, ա-րե-վից պայ-ծառ, ծաղ-կից գե-ղե-ցիկ: Քո դը-րո-շը վառ բար-ձըր կը պա-հենք, պատ-գամ-նե-րդ քո, միշտ կը-կա-տա-րենք:

Մեր անմահ Ստա՛լին, երդում ենք տվել,
Քո ճանապարհից երբեք չշեղվել:
Հարազատ Ստա՛լին, մեր արև անշեջ,
Քո հուրն է անմար բոցկլտում մեր մեջ.
Մենք խոսք ենք տալիս պիոներական,
Ուսման, գործի մեջ լինել քեզ նման:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՎՇՏԱԼԻ ՕՐԵՐԻՆ




Միությունների տունը, որտեղ դրված էր ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար Իոսիֆ Վիսսարիոնովիչ ՍՏԱԼԻՆԻ մարմինն ամփոփող դագաղը:



ԳՈՐԻ: Այդ օրերին, երբ սովետական ժողովուրդը հրաժեշտ էր տալիս իր մեծ առաջնորդին, Գորի քաղաքի և այլ քաղաքների ու գյուղերի հազարավոր մանածագործներ, երկաթուղայիններ, կառուցողներ, ծառայողներ և կոլտնտեսականներ անվերջ հոսանքով գնացին դեպի այն տնակը, որտեղ ծնվել ու իր մանկական տարիներն է անցկացրել Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ: Հինգ օրվա ընթացքում պատմական տնակն այցելել են ավելի քան երեսուն հազար մարդ: ՆԿԱՐՈՒՄ՝ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ տնակի մոտ: